Ընկերությունը ամենաանհրաժեշտ բանն է կյանքում, որովհետև ոչ ոք չէր ուզենա ապրել առանց ընկերոջ, նույնիսկ եթե ունենար մյուս բոլոր բարիքները:

ԱՐԻՍՏՈՏԵԼ

Ես չեմ ուզում այնպիսի ընկեր, որն ամեն ինչում համաձայնվելով ինձ հետ՝ փոխում է կարծիքը: Նույն բանը ստվերն ավելի լավ է անում:

ՊԼՈՒՏԱՐՔՈՍ

Ինչ քա՜ղցր են բարեկամական շուրթերից եկած քննադատական դիտողությունները: Դրանց հավատում ես, դրանք քեզ օգնում են, բայց քանի որ չես կասկածում դրանց ճշմարտությանը, ցավ չեն պատճառում:

ՕՆՈՐԵ ԴԸ ԲԱԼԶԱԿ

Վախկոտ ընկերը թշնամուց սարսափելի է, որովհետև թշնամուց զգուշանում ես, իսկ ընկերոջ վրա հույս դնում:

Լ. ՏՈԼՍՏՈՅ

Ունենա՜լ սիրելի մի ընկեր, որի ձեռքը հանձնած լինես ամբողջ էությունդ, և որը քո ձեռքը հանձնած լինի իր ամբողջ էությունը: Հանգստանա՜լ վերջապես, քնել, երբ հսկում է ընկերդ, հսկել, երբ քնում է նա: Ճանաչե՜լ հաճույքն այն բանի, որ պաշտպանում ես նրան, ում սիրում ես և որը քեզ վստահում է մանկան պես:

ՌՈՄԵՆ ՌՈԼԱՆ

Եթե դու չես կարող ուղղակի, սրտանց, նույնիսկ խստորեն ասել ընկերոջդ այն ամենը, ինչ մտածում ես նրա մասին, նրա արարքի մասին, կամ նրանից լսել նույնպիսի ճշմարտություն քո մասին, նշանակում է դուք, ինչպես հարկն է, և չեք հավատում իրար, չեք հասկանում իրար և չեք հարգում իրար:

Ի. ԳՈՆՉԱՐՈՎ

Անկեղծությունը ճշմարտության մայրն է և ազնիվ մարդու չափանիշը:

ԴԵՆԻ ԴԻԴՐՈ

Մեկը՝ թեկուզ և նա մեծ լինի, դարձյալ փոքր է:

Մ. ԳՈՐԿԻ

Ընկերությունն ամենից առաջ անկեղծություն է, ընկերոջ սխալների քննադատություն: Առաջին հերթին բարեկամները պետք է խիստ քննադատության ենթարկեն, որպեսզի ընկերը կարողանա ուղղել իր սխալը:

Ն. ՕՍՏՐՈՎՍԿԻ

ՀՈՒՆՎԱՐ
№ 1 1962 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
33-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ





# Ինչպիսի ընկեր ես ԴՈՒ

Ջեզանից շատերին հաճախ հուզում է այն հարցը, թե ինչպե՞ս անել, որ դասարանում բոլորը համերաշխ լինեն, ինչպե՞ս վարվել լավ ընկերներ, մտերիմ բարեկամներ ունենալու համար։ Արդյոք շարունակե՞լ ընկերությունը, երբ տեսնում ես, որ ընկերդ սխալ ճանապարհի վրա է, թե՞ թողնել հեռանալ, նրա վատ գծերը չընդօրինակելու համար։ Ո՞րն է ավելի լավ. մտերիմ լինել դասարանում բոլորի՞, թե՞ միայն մեկի հետ։ Ո՞րն է լավ ընկերը, նա՞, ով թաքցնում է ընկերոջ բացը, թե՞ նա, ով բացեիբաց խոսում է այդ մասին նույն այդ ընկերոջ և կոլեկտիվի առաջ։

Եկեք միասին խորհենք այս մասին։

## ՄԻ՞ԹԵ ԻՐԱՎԱՑԻ Է ԱՆԱՀԻՏԸ

Անահիտը պատմում է, որ իրենց դասարանը շատ համերաշխ կլիներ, եթե չլինեին մի քանիսը, որոնք միշտ փչացնում են ամբողջ գործը։

«Մի անգամ որոշեցին,— պատմում էր նա,— հաջորդ օրը հայոց լեզվի տետրերը չբերել դասարան և այդպիսով ազատվել ստուգողական թելադրություն գրելուց, պատճառաբանելով, թե ուսուցչուհին նախօրոք չի զգուշացրել այդ մասին։ Եվ բոլորը խոսքը մեկ արած պնդեցին նույն բանը։ Մի քանիսը, թեև դեմ էին այս բանին, դասի ժամանակ լռեցին, և թելադրությունը չգրեցինք։ Իսկ մի օր էլ, ֆիզկուլտուրայի դասից առաջ հավաքված զրուցում էինք, պարզվեց, որ ոչ մեկս տրամադիր չենք ֆիզկուլտ դահլիճում գործիքների վրա պարապել։ Եղանակը հրապուրիչ էր, գարնանային արևոտ օր։ Ավելի հաճելի էր բակում գնդակ խաղալ, քան թե քրտնել պտըտաձողի վրա։ Որոշեցինք ֆիզկուլտուրայի ուսուցչին ասել, թե մոռացել ենք մեր սպորտային հագուստները բերել, և առանց դրանց անհարմար է պարապել գործիքների վրա։ Թեև նախօրոք զգուշացված էր դասի ներկայանալ սպորտային հագուստներով։

Կարինեն և Սեդան դեմ էին մեր որոշմանը։

— Անհարմար է, ինչպե՞ս կարելի է ստել։

— Դե ի՛նչ ընկերներ եք դուք,— խոսում էինք մենք,— ուզում եք աչքի ընկնել։

Վեճը գուցե երկար տևեր, բայց զանգը հնչեց, և բոլորս վազեցինք դահլիճ։

Ճիշտ է, այդ օրը բավական հետաքրքիր անցավ դասը. մենք նոր վարժություն սովորեցինք զուգա-

> Հաճույքներից մեծագույնը, որ կարող է զգալ միայն ազնիվ մարդը, դա իր ընկերներին հաճույք պատճառելն է։
>
> ՖՐԱՆՍՈՒԱ ՎՈԼՏԵՐ

փայտերի վրա, բայց եթե նրանք չլինեին, բակում գնդակ կխաղայինք»։

Ո՞վ է ավելի լավ ընկեր, նա՞, որ համաձայն է քեզ հետ բոլոր հարցերում, թե՞ նա, ով հարկ եղած դեպքում վիճում է, հակաճառում։

## ՍԱ, ԻՀԱՐԿԵ, ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒՆ ՉԷ

Սեդան բողոքում է, որ ինքը ընկեր չունի։ Ինչպե՞ս վարվի, որ ինքն էլ մտերիմ ընկերուհիներ ունենա։ Իսկ Արևիկը պարծենում է, թե ում հետ ուզի՝ կարող է մտերմանալ։ Իհարկե, մարդիկ տարբեր խառնվածքի տեր են լինում։ Մեկը դժվար է մտերմանում, բայց երբ մտերմանում է, այդ ընկերությունը լինում է ամուր, հիմնական, հավատարիմ։ Լավ է, երբ մարդ այդպիսի ընկեր է ունենում, որի հետ կարող է կիսել իրեն հուզող բոլոր հարցերը, օգնել նրան դժվարությունները հաղթահարելու, ուղղել նրա սխալը և այդ բոլորը հատուցել ընկերոջը նույնքան անկեղծ ու հավատարմորեն։ Մի ուրիշը հեշտությամբ բացվում է, ամենքի հետ անկեղծ է, բարի, սրտաբաց։ Սա էլ վատ չէ, բայց կան մարդիկ, որոնք լռակյաց են, ինքնամփոփ, վախենում են իրենց ապրումների և զգացումների մասին խոսել ընկերոջ հետ, հանկարծ չծաղրի՞ ընկերը։ Չի հասկանում թվաբանության խնդիրը, հաջորդ օրը «երկուս» է ստանում դասից, բայց չի դիմում ընկերոջ օգնությանը։ Ինչպե՞ս ստորանա նրա առաջ, իսկ եթե նա ծիծաղի՞ իր տգիտության վրա։ Դրանով նա ավելի ծիծաղելի վիճակի մեջ է ընկնում։ Իհարկե, կան և Գագիկի նման մարդիկ։ Գագիկը թվաբանությունից պարապում է Աշոտի հետ։ Բայց Աշոտը, որ սկզբում շատ էր ուրախացել, շուտով հրաժարվեց ընկերոջ օգնությունից։ Ինչու՞։ Չէ՞ որ Գագիկը ուրախությամբ էր հանձն առել ընկերոջն օգնելու գործը և միշտ նշանակված ժամին սպասում էր Աշոտին։ Այո, սպասում էր և պարապում։ Բայց, սկսած Գագիկի հինգ տարեկան եղբորից, վերջացրած բակի և դպրոցի աշակերտներով, բոլորն էլ գիտեին, որ «Աշոտը շատ դմբո է, իսկի բան չի հասկանում, Գագիկը ստիպված է մի բանը տասն անգամ ասել»։ Այս բոլորը լսելուց հետո Աշոտն էլ ինչպե՞ս գնար Գագիկի մոտ։

Սա, իհարկե, ընկերություն չէ։

**Ընկերության մեջ ստրուկ և իշխող չպետք է լինի. ընկերությունը հավասարություն է սիրում։**

**Ի. ԳՈՆՉԱՐՈՎ**



Պատահում է և հակառակը։ Պետիկը փոքրամարմին է, կարճահասակ, բայց շատ լավ է սովորում, իսկ Վանիկը, որ նրանց բակում է ապրում և բավական ամրակազմ, ֆիզիկապես ուժեղ տղա է, թվաբանությունից ետ է մնում և դժվարանալիս միշտ վազում է Պետիկի մոտ։ Պետիկն, իհարկե, օգնում է հանույքով։ Բայց բավական է մտնեն դպրոցի բակը, Վանիկն այլևս չի ճանաչում նրան, չի նկատում նրա գոյությունը։ Իր ինչի՞ն է պետք Պետիկը, երբ այնտեղ կան իր նման «ուժեղ» Աշոտն ու Գագիկը, որոնց հետ նա կարող է չափվել սպորտի բոլոր ձևերում։ Պարզ բան է, որ այսպիսի ընկերությունն էլ երկար չի շարունակվի։

## ՊԱՏԱՀՈՒՄ Է ԵՎ ԱՅՍՊԵՍ

Շրջապատում գրեթե բոլորն ընկերներ ունեն, իսկ ինքը չունի, ինչու՞ մենակ մնալ։ Դիմում է մեկն ու մեկին, թե արի մենք էլ ընկերություն անենք։ Հիշում եմ, երբ ես հինգերորդ դասարանում էի, երկու մտերիմ ընկերուհի ունեի։ Մենք այնքան մտերիմ էինք, որ ամբողջ դպրոցում հայտնի էինք



«անբաժանելի եռյակ» մականունով։ Մեր ընկերությունը բավական նախանձելի էր։ Եվ ահա դասարանում մի քանիսը սկզբում կատակով, հետո ավելի լուրջ, որոշեցին՝ թե եկեք մենք էլ «տասնությակ» կազմենք և ավելի լավ ընկերություն անենք։ Եվ կազմեցին։ Կազմեցին, բայց «տասնությակը» ընդամենը երեք օր ապրեց։ Իսկ հետո ցրվեց։ Ինչու՞. որովհետև նրանք ընկերություն էին ուզում անել որոշումով։ Դժվար է, իհարկե, որ տասնութ մարդ խառնըվածքի այնքան նույնանման կողմեր ունենան, որպեսզի կարողանան մտերիմներ մնալ։ Այլ բան է լինել սովորական դասընկեր, համադասարանցի, լավ փոխհարաբերությունների մեջ գտնվել ընկերների հետ։ Այդ «տասնությակը» կցրվեր, եթե ոչ թե տասնութ, այլ երկու հոգուց բաղկացած լիներ, քանի որ դա հիմնված էր ոչ թե բնավորության, ձգտումների նմանության վրա, այլ որոշված էր հենց այնպես, թեթևամտորեն, առանց սկզբունքի։ Իսկ «եռյակը» դեռևս շարունակում է մնալ։ Իսկական ընկերության համար ժամանակ է հարկավոր, և կյանքն ինքը ցույց կտա, թե ով է քո իսկական ընկերը։

## ՍԿԶԲՈՒՆՔՈՐԵՆ ՄՈՏԵՆԱԼ, ՆՇԱՆԱԿՈՒՄ Է ՊԱՅՔԱՐԵԼ ՄԱՐԴՈՒ ՀԱՄԱՐ

Ջոկատավարուհի Սիմա Սոլովյովան պատմում է.
«Մոսկովյան գիշերօթիկ դպրոցներից մեկում ես ծանոթացա մի լավ աղջկա հետ։ Նրա անունը Մաշա է, իսկ ազգանունը չեմ ուզում հայտնել։ Մաշայի տատիկը աշխատում է նույն այդ գիշերօթիկ դպրոցում իբրև հավաքարար և Մաշայի հետ միասին ապրում է դպրոցի շենքում։

Մի անգամ, ամռանը Մաշան ծանոթացավ իրենց դպրոցի յոթերորդ դասարանցի մի պատանու հետ։ Տղան, ճիշտն ասած, լավ տպավորություն չէր թողնում։ Երբեք ուղիղ չէր նայում դեմքիդ, խոսելիս գռեհիկ բառեր էր օգտագործում և անվերջ թքում էր։ Հետդ խոսում էր ու թքում. հավանաբար կարծում էր, թե դա առնական տեսք է տալիս իրեն։

Ամռանը այդ տղան հաճախ էր գալիս Մաշայի մոտ։ Նրանք երկար զրուցում էին, միասին օգնում տատիկին. կարտոֆիլ էին մաքրում կամ խանութ գնում, երբեմն էլ՝ շուկա։ Մի անգամ նա Մաշային խոստովանեց, որ գողերի շրջապատն է ընկել և ինքն էլ մի քանի անգամ գրպան է մտել։

Ես պատկերացնում եմ, թե որևէ մայր ինչպես կսարսափեր, եթե իմանար, որ իր աղջիկը ընկերություն է անում այդպիսի տղայի հետ։ «Ես քեզ արգելում եմ հանդիպել նրա հետ» — կասեր նա ճիշտ այնպես, ինչպես Օլգան՝ Ժենյա Ալեքսանդրովայի ավագ քույրը «Թիմուրը և նրա խումբը» գրքից։ Հիշո՞ւմ եք, քանի դեռ Օլգան կարծում էր, թե Թիմուրը խուլիգան է, նա շատ էր զայրանում քրոջ վրա, որ սա ընկերություն է անում Թիմուրի հետ։

Եվ ով ինձ հանդիպեց ճանապարհիս անծայր,
Նրան ողջունեցի սրտանց ու համարձակ.
«Մենակ մարդը շատ հեշտ կկորցնի ուղին,
Իսկ թե մեկտեղ լինենք՝ ոչինչ մեզ չի շեղի»։

Լ. ՌՈՒԿՐԱՒՆԿԱ

Բայց Ժենյան կեցցե, պնդեց իր խոսքը և ոչ մի կերպ չուզեց կտրվել Թիմուրից, քանի որ ինքը խորապես համոզված էր, որ նա լավ մարդ է։

Ես չգիտեմ, թե Մաշան ինչ ասաց այդ տղային, միայն գիտեմ, որ նա խոստացավ այլևս գողություն չանել։ Մաշան վատ արարքով զբաղվող այդ տղայի մեջ լավ բան էր տեսել, որը ոչ բոլորը կարող էին միանգամից հասկանալ։ Մաշան նկատել էր, որ նրա մեջ անկեղծություն, հավատարմություն կա։ Որոշ ժամանակ կանցնի, և նա թերևս ավելի լավ տղա կդառնա։ Սկզբունքայնությունն այն չէ, որ Մաշան ասեր. «Դե որ գողություն ես անում, ես քեզ հետ ընկերություն չեմ անի»։

Սկզբունքորեն մոտենալ, նշանակում է պայքարել մարդու համար, օգնել նրան։ Սկզբունքային մարդկանց մոտ, ինչպիսին Մաշան է, սխալ թույլ տված պատանին խղճի խայթ է զգում և ջանում է փոխվել, լավ մարդ դառնալ։ Ահա թե որն է լավ ընկերությունը։

## ԸՆԿԵՐՈՒԹՅՈՒ՞Ն ԿԱՐԵԼԻ Է ԱՆԵԼ ԲՈԼՈՐԻ ՀԵՏ

Շատ հաճախ այսպիսի մի հարց էլ է առաջանում՝ կարելի՞ է աղջիկների հետ ընկերություն անել, կամ հակառակը։

Ոմանք այսպես են մտածում. ինչպե՞ս կարելի է աղջիկների հետ ընկերություն անել, չէ՞ որ իրենք տղա են։

Այդպես մտածում են միայն գոռոզամիտները։ Իրականում այդպես չէ։ Նրանք շատ լավ էլ ընկերություն են անում միմյանց հետ։ Դուք ինքներդ կհամոզվեք, եթե ուշադիր նայեք ձեր շուրջը։ Ընկերություն կարելի է անել բոլորի հետ, անկախ տարիքից ու սեռից, անկախ ազգությունից ու ատինանից, միայն թե այդ ընկերը լինի ազնիվ, անկեղծ և սկզբունքային։

Սիրելի երեխանե՛ր, գրեք ձեր կարծիքը, թե ինչպես եք պատկերացնում իսկական ընկերությունը։

Ս. ՂՈՒԿԱՍՅԱՆ



Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

# ՊԱՏՐԻՍ ՔՎԵԴԵՆԴԵՆ ՄՆԱՑ ԿԱԼԼԻՍՏՈՅԻ ՎՐԱ

ԿԱՐԵՆ Ա. ՍԻՄՈՆՅԱՆ

Նկ. ՍՈՒՐԵՆ ՍՏԵՓԱՆՅԱՆԻ



Երբ բազմությունը ճեղքելով մոտեցավ ծերունի Քվեդենդեն, ես խոնարհեցի աչքերս։ Հետո զգացի, որ նա կանգնել է իմ առաջ։

Լուռ էր։

Գլուխս բարձրացրի և նայեցի ուղիղ նրա աչքերի մեջ։

Ծերունի նեգրի ալեհեր գլուխը մեղմ ցնցվում էր, դողում էին նրա շուրթերը, բայց նա լուռ էր։

Անօգնական նայեցի շուրջս։

— Ո՞րտեղ է Պատրիսը,— հարցրեց նա կիսաձայն։

Հրթիռակայանի կենտրոնական սրահի ընդարձակ պատուհանից նայեցի դուրս։ Այնտեղ, լուսարձակների լույսի տակ, իր սրածայր քթով երկնքի խավարի մեջ մխրճվել էր մեր տիեզերանավը, որն ընդամենը մեկ ժամ առաջ վայրէջք կատարեց Երկրի վրա։

Ապա շրջվեցի դեպի Մագդա Սուպպերը։ Իսկ ծերունի Քվեդենդեն կրկին հարցրեց.

— Որտե՞ղ է Պատրիսը։

Մագդան ու ես թևանցուկ արեցինք Պատրիսի հորը։ Ջոն Բամբլի հարազատները ճանապարհ տվեցին մեզ։

Դանդաղ քայլեցինք դեպի ելքը։ Ինձ համար այդ մի քանի տասնյակ քայլը անսահմանության չափ երկար թվաց, ու ես հիշեցի անհունության մեջ գլորվող Յուպիտերը, նրա արբանյակ Կալլիստոն...

* * *

Երկու օր հետո արշավախումբը մեկընդմիշտ թողնելու էր Կալլիստոն, իսկ Ջոն Բամբլի դրությունը օրը օրին վատանում էր։

Ջոնը պառկել էր խցիկում, միայնակ։

Ընկերները հավաքվել էին խցիկի դիտապատուհանի առաջ, և հաստ ապակին էր նրանց բաժանում հիվանդից։

— Ջո՛ն, դու լսու՞մ ես,— արդեն անհանգստացած, միկրոֆոնի մեջ գրեթե բղավեց Մագդա Սուպպերը։

Հիվանդը միայն խոնարհեց աչքերը։

— Ջո՛ն, երկու օր հետո մեկնելու ենք,— ասաց Մագդան։

Բամբլը փորձեց ժպտալ։

— Եթե դիմանաս,— շարունակեց աղջիկը,— Երկրի վրա քեզ անպայման կբուժեն։

Այստեղ Պատրիս Քվեդենդեն անջատեց միկրոֆոնը և շշնջաց աղջկան.

— Մենք Երկիր կհասնենք մեկ տարի հետո։

Աղջիկը շփոթված նայեց նեգրին, ապա՝ Բերլակուա Ժուան Քրիստոբալին։ Իսկ նեգրը շարունակեց.

— Հանգիստ թողեք նրան։

Ու երեք ընկերները հեռացան Ջոն Բամբլի խցիկի դիտապատուհանից։

Ընդհանուր սենյակում տիրում էր կիսախավար, ու թափանցիկ առաստաղի միջով երևում էր ամբողջ երկնակամարը զբաղեցնող Յուպիտերը։ Եվ նեգրը ասաց.

— Նրա առողջությունը վատացավ Յուպիտերից վերադառնալուց հետո։

— Այո՛, Պատրի՛ս,— հաստատեց Մագդան։

— Լավ է շուտ գուշակեցինք, որ այդ տարօրինակ հիվանդությունը վարակիչ է,— նկատեց Բերիլակուան։

— Եթե Գամֆոը չստուգեր, մենք ոչինչ էլ չէինք գուշակի,— ասաց Պատրիս Բվեդենդեն։

Յուպիտերի վրա երևում էր Մեծ Կարմիր Շերտը, որ տարիներ շարունակ մտահոգություն էր պատճառել աստղագետներին։ Մեծ Կարմիր Շերտը դանդաղ ճոճվում էր, իսկ Հարավային Արևադարձային Հուզմունքը, որը մոխրագույն էր ու մռայլ, սահում էր Յուպիտերի վրայով։ Պատրիս Բվեդենդեն ասաց.

— Քամբլի հիվանդության պատճառը այդ Կարմիր Շերտն է։

— Որտեղի՞ց գիտես,— հարցրեց Բերիլակուա Ժուան Քրիստոբալը։

— Ենթադրում եմ,— պատասխանեց նեգրը։— Իմ ասածը սովորական մի ենթադրություն է։ Ջոնը զբաղված էր Մեծ Կարմիր Շերտի ուսումնասիրությամբ։ Եվ վերջին անգամ նա հրթիռանավով շատ մոտեցավ Յուպիտերին։

Մոխրագույն Հուզմունքը հալածում էր Մեծ Կարմիր Շերտին։ Մուգ, ծանր ամպերը երբեմն պարուրում էին նրանց։ Մեծ Կարմիր Շերտը շողում էր պայծառ, կուրացնող լույսով։

Բերիլակուան կտրուկ շարժումով սեղմեց անջատիչը, ու պատը դարձավ անթափանց։ Չքացան թե՛ երկնակամարը, թե՛ Յուպիտերը և թե՛ Մեծ Կարմիր Շերտը։ Սենյակում մնաց միայն ծանր տրամադրությունը։

Երկու տարուց ավելի էր, ինչ քառյակը հաստատվել էր Յուպիտերի Կալլիստո արբանյակի վրա։ Այդ ժամանակամիջոցում նրանք համառությամբ աշխատել ու միասին պայքարել էին տիեզերական անակնկալների դեմ։ Եվ այդ տարիների ընթացքում չորսն էլ իրենց հոգու խորքում միշտ անհամբերությամբ սպասել էին այն օրվան, երբ կլքեն իրենց կացարանը, կլքեն Կալլիստոն ու կթռչեն դեպի Երկիր, դեպի տուն։

— Նա Երկիր չի հասնի,— լռությունը խզեց Պատրիսը։

— Չի հասնի,— արձագանքեց Բերիլակուան։

— Դուք դաժան մարդիկ եք,— բողոքեց Մագդա Սուպպերը։— Ջոն Քամբլին սպասում են կինը, երեխաները... Նրանք սպասում են։

— Մենք ասում ենք ճշմարտությունը,— անվրդով շարունակեց նեգրը։— Այդ վիճակում մարդիկ երբեք մեկ տարի չեն դիմանում։

— Այո՛, մեկ տարին շատ երկար ժամկետ է,— արձագանքեց Բերիլակուա Ժուան Քրիստոբալը։

Մագդա Սուպպերը հեկեկաց։

— Կարիք չկա,— ասաց Պատրիսը։— Ամեն ինչ պատահում է։ Դուցե մեզանից ոչ ոք չկարողանա հասնել Երկիր։— Եվ նա գրկեց Մագդային։— Հանգստացիր,— շարունակեց նեգրը։— Երբ մենք պատրաստվում էինք թռչել դեպի Կալլիստո, հայրը ասաց, որ չնայած իր օրերը վաղուց են հաշված, բայց ինձ պետք է սպասի։ Եվ նա հիմա սպասում է ինձ։ Ես համոզված եմ։ Բոլորիս հարազատներն էլ սպասում են։ Բայց ճշմարտությունը մեկն է՝ Ջոնը թերևս չդիմանա։

—Միջմոլորակային նավում Քամբլի համար պետք է մեկուսացված սենյակ նախապատրաստենք,— ասաց Բերիլակուան։

Կացարանի տանիքը թմբկահարեցին։ Աղմուկը գնալով սաստկանում էր։ Բայց ոչ ոք ուշադրություն չդարձրեց դրա վրա։ Երկնաքարային կարկուտին քառյակը վաղուց էր վարժվել։ Նրանք ոտքի ելան, դուրս եկան սենյակից և ուղղվեցին դեպի Ջոն Քամբլի խցիկը։ Փոքրիկ դիտապատուհանից նայեցին հիվանդին։ Մեխանիկական ծառայողներից մեկը զգուշությամբ սրբում էր Քամբլի քրտնած ճակատը։

Երբ հիվանդը նկատեց ընկերներին, նրա շուրթերը նախ շարժվեցին անձայն, և ապա մեծ դժվարությամբ այդ շուրթերից պոկվեցին բառերը։

— Դուք երկու օր հետո կմեկնեք,— ասաց հիվանդը։ Եվ փորձեց ժպտալ։ Այն օրից, երբ նա անկողին էր ընկել, միշտ փորձում էր ժպտալ ըն-





կենտրոնին։ Բայց այդ ժպիտը ավելի էր աղավաղում նրա հյուծված, մաշված դեմքը։— Ես ձեզ հետ չեմ լինի,— շարունակեց նա հևալով։

— Ինչպե՞ս,— չհասկացավ Բերիլակուան։ Իսկ Պատրիս Բլենդինգեն հուզված հեռացավ դիտապատուհանից։

— Ես չեմ գա ձեզ հետ,— կրկնեց հիվանդը։— Չի՛ կարելի,— նա լռեց, ապա,— կմնամ այստեղ, Կալլիստոյի վրա։

— Դատարկ բաներ ես ասում,— վրդովվեց Բերիլակուա Ժուան Քրիստոբալը։

— Չի՛ կարելի ինձ Երկիր վերադարձնել։ Ես կվարակեմ ամբողջ Երկրագունդը,— բացատրեց Ջոն Բամբլը։— Իրավունք չունեմ վերադառնալու։ Կսպասեմ, եթե դիմացա, մինչև որ փրկարար արշավախումբը գա։

Մագդա Սուպպերը ափերով ծածկեց դեմքը։ Պատրիս Բլենդինգեն մոտեցավ միկրոֆոնին։

— Եթե դու մնաս,— ասաց նեգրը,— սպասելու ես ամբողջ երկու տարի։ Մեկ տարվա ընթացքում մենք Երկիր կհասնենք։ Մեկ տարի էլ կտևի, մինչև Երկրից Կալլիստո ժամանի փրկարար արշավախումբը։ Երկու տարի։ Դա սարսափելի է։

— Չպետք է ձեզ հետ մեկնեմ,— կրկնեց Ջոն Բամբլը։— Միայն ափսոսում եմ, որ այնպես էլ չկարողացա իմանալ Մեծ Կարմիր Շերտի գաղտնիքը,— ավելացրեց նա և գլուխը թաղեց բարձի մեջ։

Նորից լռեցին։ Այս անգամ ավելի երկար։ Երկնաքարային կարկուտը դադարեց։ Եվ կացարանում տիրող լռությունը դարձավ ահավոր։

— Դու ճիշտ ես,— վերջապես խոսեց Պատրիս Բլենդինգեն։— Երկիր վերադառնալ քեզ չի կարելի։ Բայց դու մենակ չպետք է լինես այստեղ։ Երբե՛ք։ Ես կմնամ քեզ հետ։ Միասին կսպասենք փրկարար արշավախմբին։

Միջանցքի պատուհանի ուղղանկյան մեջ տիեզերքից մի փոքրիկ հատված էր ծեփվել։ Իսկ ցածի անկյունում շողում էր Յուպիտերի սկավառակից մի կտոր, որի վրա սողում էր Մոխրագույն Հուզմունքը։

Ոչ ոք չփորձեց վիճել Պատրիս Բլենդինգեի հետ։

* * *

Կանգնեցինք նրբի դռների մոտ։ Ծերունի Քվեդենդեն երկար նայեց ինձ, ապա Մագդային։ Պատրիսի հոր գլուխը շարունակվում էր մեղմ ցնցվել։ Նա պատասխանի էր սպասում։

— Հա՛յր,— ասացի,— Պատրիսը մնաց։ Նա չուզեց մենակ թողնել Ջոն Քամբլին։

— Գիտեմ,— ասաց ծերունի Քվեդենդենը,— բայց ես Պատրիսին սպասում էի։ Ու երևի այլևս չեմ տեսնի նրան։

Եվ առանց ետ նայելու, դանդաղաքայլ հեռացավ մեզանից։

Իսկ ես ու Մագդան նայեցինք մութ երկնքին, որտեղ բյուր աստղեր էին առկայծում, գտանք այդ բյուրավոր կրակների մեջ Յուպիտերը, բայց Կալլիստո արբանյակը չէր երևում։

# Ձմռան գիշեր

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Ձյուն է գալիս. ձյուն է մաղում
Լոռվա երկինքն ամպամած.
Փաթիլներն են կարծես խաղում,
Իջնում են լուռ ու կամաց։
Մեր գետակը մտել է քուն՝
Գիշերային անուրջով,
Նապաստակը գյուղ է մտնում
Սառցե բարակ կամուրջով։
Գնում է նա, վախից դողում,
Սրտում սարսափ կա հազար,
Գնում է, որ քնած գյուղում
Ճարի կաղամբ ու գազար։
Եվ դպրոցի արձակ բակում,
Դողդողալով ու ձյունոտ՝
Կանգնում է նա, լուռ ու թաքուն,
Ճագարների բնի մոտ։
Ուտելիք է նարում թափված,
Խոտ է գտնում բուրավետ
Եվ ասում է մտքում կամաց.
— Ա՜խ, լինեի սրանց հետ։
Տնակ ունեն տաքուկ ու նոր,
Ունեն սրանք առատ կեր.
Իսկ ես ընկած անտառ ու ձոր՝
Թափառում եմ անընկեր։
Փաթիլներն են դանդաղ իջնում՝
Երկրի խաղաղ անուրջով,—
Ու շլդիկը ետ է փախչում
Գետի սառցե կամուրջով։



Նկ. ԱԼԲԵՐՏ ԿԱՐԱԳՅԱՆԻ





ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Նկ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Կար ժամանակ, որ Թութակը ոչ գույնզգույն փետուրներ ուներ, ոչ էլ կրկնում էր ուրիշի ասածները։ Նա իր սեփական գույնն ուներ, ձայնն էլ յուրահատուկ էր։ Բայց թե ինչպե՞ս զրկվեց այդ բոլորից, ահա այդ մասին է, որ ուզում եմ պատմել։

Մի անգամ Արծիվը որսի գնաց և սովորականից ավելի հեռացավ իր բնից։ Օրն արդեն մթնում էր, և նա որոշեց գիշերել իր հպատակներից մեկի մոտ։ Այնպես պատահեց, որ նա հյուր գնաց Թութակին։ Թութակը ոտ ու ձեռ ընկավ. ինչ ուներ-չուներ, բերեց դրեց արքայի առաջ, պատվեց, մեծարեց, ինչպես որ պետք էր։ Կերան, խմեցին, ուրախացան։ Արծիվն իրեն հասարակ էր պահում, և Թութակի քեֆին-քեֆ չէր հասնում։ Էլ չէր կաշկանդվում և համարձակ բլբլացնում էր։ Նա ջանում էր խելացի և ինքնուրույն մտքեր ասել։ Խոսք բացվեց հեռու, բարձր, արագ թռչելու մասին։ Թութակը գովեց իր արքային, ապա ասաց.

— Բազեն էլ արագ է թռչում։ — Մի քիչ լռեց, հետո ավելացրեց, — ամենից արագ Բազեն է թռչում։

— Բազե՞ն... ամենից արա՞գ, — վրդովվեց Արծիվը։

— Թագավորն ապրած կենա, — ասաց Թութակը խոնարհվելով, — դու մեր գլխի տերն ես, բայց ինչոր ճիշտ է, ճիշտ. Բազեն բոլորից արագ է թռչում։

Արծիվը մռայլվեց և ոչինչ չպատասխանեց։ Թութակն սկսեց ուրիշ բանի մասին շաղակրատել, որպեսզի ցրի արքայի վատ տրամադրությունը։ Սրտի խորքում զղջաց, որ վշտացրեց նրան։ Սակայն մտածեց. «Կքնենք, կարթնանանք, Արծիվը կմոռանա, և ամեն ինչ լավ կլինի»։

Քնեցին, արթնացան։ Բայց լուսաբացին արքան սուսուփուս հեռացավ. ոչ շնորհակալություն հայտնեց, ոչ էլ հրաժեշտ տվեց։ Թութակը այնպես տխրեց, կարծես իր ածած ձվերը ջարդուփշուր եղած լինեին։ Ողբալուց ի՞նչ օգուտ. և տխուր մտքերը ցրելու համար ամբողջ օրը թռավ դեսուդեն։ Իր օդային զբոսանքի ժամանակ նա պատահաբար իմացավ, որ Սոխակը երեկոյան համերգ է տալու։

Թութակը որոշեց համերգի հրավիրել իր հարուստ ազգականուհուն՝ տիկին Սիրամարգին։ Ինչպես որոշեց, այնպես էլ արեց։

Այնքան շատ թռչուններ էին հավաքվել համերգային դաշտում, որ փետուր գցելու տեղ չկար։ Սոխակն սկսեց երգել. ինչպե՜ս էր երգում, բոլորի խելքը գնում էր։ Ամեն մի համարից հետո թռչունները ոգևորված ծափահարում էին, թևերն օդում թափահարելով։ Թութակն էլ բոլորի պես խանդավառվել էր Սոխակի հմայիչ երգերից և ինչքան ուժ ուներ ծափահարում էր։ Իսկ տիկին Սիրամա՞րգը... Տիկին Սիրամարգը ամբողջ համերգի ընթացքում բոլորովին չշարժվեց տեղից։ Թութակն այդ նկատեց, բայց և մտածեց, որ նա ծանր է։ Այնքան շատ փետուրներ կան վրան, որ չի կարող մյուսների պես թռվռալ։ Սիրամարգի փետուրներն էլ թանկագին են, հանկարծ ու մի հատը կորավ, ափսոս չէ՞։

Համերգից հետո Թութակը տուն ուղեկցեց իր ծանրամարմին ազգականուհուն։ Ճանապարհին նա շարունակ գովում էր Սոխակին։ Տիկին Սիրամարգը չէր արձագանքում։ Վերջը համբերությունը հատավ, և մեր Թութակի խոսքը բերանում կտրեց.

— Սոխակն ի՞նչ ձայն ունի որ... Դու լսե՞լ ես իմ երգը, — ասաց և մի կռկռո՜ց արձակեց, մի կռկռո՜ց, ականջները բռնիր ու փախիր։

Թութակն ուզեց անուշ խոսքով խելքի բերել իր փարթամ ու գեղեցիկ ազգականուհուն և մեղմ ձայնով ասաց.

— Տիկի՛ն Սիրամարգ, դու չքնաղ ես, քո տարազի նմանը չկա աշխարհում, բայց և այնպես ո՞վ չգիտի, որ Սոխակը...

Տիկին Սիրամարգը չթողեց, որ Թութակը խոսքը վերջացնի, թափով վրա տվեց.

— Այդպե՞ս... հը՞... դու էլ դավաճան դուրս եկար։ Մինչև հիմա քեզ սիրել եմ, նեղ օրից հանել, և դու... դու... գնա՛, երեսդ չե՛մ ուզում տեսնել։

Եվ Թութակը բոռ ու փոշման հեռացավ։ Գիշերը քունը չտարավ։ Բնում մնալ չէր լինում։ Նա սկսեց թարմ օդում թափառել, և ու՞մ հանդիպի՝ լավ է... Բուին։ Բուն Թութակին տեսավ թե չէ, կլոր աչքերը զարմանքից չռեց և բացականչեց.

— Մո՞ւթ քեզ տեսնողին, ապրե՛ս դու, երկա՞ր ապրես։ Վերջապես համոզվեցիր, որ խավարից լավ բան չկա աշխարհում։

Ասաց ու գրկեց նրան։ Թութակը զզվելով՝ ազատվեց նրա թևերից և բրթմնջաց.

— Էլի քո հին երգն ես երգում, անխելք արարած։ Բուն ի՞նչ գիտի, լույսն ինչ է։ Լույսը, տխմա՛ր, ամենաշքեղ, ամենապայծառ... ա՜խ, ինչպե՞ս բացատրեմ, որ հասկանաս։

— Մութը ամենալավն է,— համառորեն ասաց Բուն, զայրացած աչքերը սլորեց Թութակի վրա, շուռ եկավ ու հեռացավ։

Հաջորդ օրը Թութակը մարգագետնում հանդիպեց Կաչաղակին։ Դեսից-դենից շաղակրատեցին, վերջը Կաչաղակն ասաց.

— Արի մեր տուն, տես ի՞նչ փայլուն զարդեր ունեմ։

Կաչաղակի ինքնահավանությունը դուր չեկավ Թութակին, և նա պատասխանեց.

— Ես էլ քեզ պես որ գողանամ՝ կունենամ։ Բայց տես, վերջդ վատ կլինի, քեզ կբռնեն կմորթեն հա՜...



— Նախանձում ես, անշնո՛րհք,— ծաղրեց նրան Կաչաղակը և ինչքան շնորհք ուներ, բերանից դուրս տվեց։

Թութակը չարացավ։ Ինքն էլ ոնց որ պետք է պատասխանեց, հետո թողեց գնաց իր մտերիմ բարեկամ Սագի մոտ։ Սիրտը թեթևացնելու համար մեկը մյուսի հետևից պատմեց վերջին օրերի ծախորդությունները և խորհուրդ հարցրեց նրանից։ Դե, Սագին ո՞վ է խելք տվել, որ նա էլ ուրիշին խորհուրդներ տա։ Սուսիկ-փուսիկ լսեց Թութակի գանգատները, հետո թե՝

— Մի՛ մտածի, Թութո ջան, արի շաշկի խաղանք՝ դարդերդ մոռացիր։

Թութակն սպասում էր, որ իր հարազատ ընկերը խելքը գլխին մի բան կասի։ Տեսավ՝ չէ, նրանից խորհուրդ սպասելը միամտություն է, ասաց.

— Լավ ես ասում, Սագո ջան, բեր խաղանք։

Շաշկին դրին և սկսեցին խաղալ։ Առաջինը տարավ Թութակը, երկրորդը՝ նույնպես, երրորդը՝ նույնպես։ Եվ որովհետև մյուսների վրա շատ էր չարացած, իր մաղձը թափեց Սագի վրա և սկսեց ծեռ անել։

— Սագո ջան, դու իմ ղազն ես։

— Յա՜,— նեղացավ Սագը։

— Սագո ջան, քեզ բմբլահան պիտի անեմ։

— Մի քիչ քաղաքավարի,— զգուշացրեց Սագը։

Հին ընկերների միջև ի՞նչ քաղաքավարություն, մանավանդ որ նրանցից մեկը ջղայնացած է։ Առան-տվին, մեկն ասաց, մյուսը պատասխանեց։ Իրար հետ ուզածիդ պես վիճեցին, և Թութակը թողեց ու գնաց։ Է՜հ, պատկերացրեք Թութակի վիճակը։ Քունը փախավ։ Գիշերը մտածեց, ցերեկը մտածեց, երկար մտածեց, վերջը ինքն իր հետ սկսեց խոսել. «Թութո ջան, ի՞նչ գործ ունես Արծվին ասես «Բազեն քեզնից արագ է թռչում», Սիրամարգին՝ «Սոխակը քեզնից լավ է երգում», Կաչաղակի երեսին ասես, թե գող ես։ Քո ի՞նչ գործն է։ Թող ուրիշը ասի։ Ինչու՞ զուր տեղը



վատ թռչուն լինես։ Ընդունենք, որ ճիշտ ես, բայց էլի եմ ասում, քո ի՞նչ գործն է։ Որդ ես ուտում, խոտ ես ուտում, թե հատապտուղ, գլուխդ բարձր արա, կեր ու ապրիր, էլի՜։ Այս աշխարհի ցավերը քե՞զ են տվել, որ դարմանես։ Բա այն խեղճ Սագոյի՞ն ինչու կպար։ Նա հո մեղք չունի, որ անխելք է։ Ասենք Սագոն հարազատ ընկեր է, այսօր նեղացավ, վաղը կհաշտվի։ Դու այն ասա, մյուսների՞ հետ ինչ անես»։

Մտածեց, գիշերը մտածեց, ցերեկը մտածեց, վերջը որոշեց. «Ով ինչ ասի, պիտի ասեմ՝ ճիշտ է, այդպես է։ Ո՞չ ոք էլ ինձանից չի նեղանա, բոլորի համար էլ լավ թռչուն կլինեմ։ Հենց վաղը կգնամ բոլորից ներողություն կխնդրեմ»։

Հաջորդ օրը Թութակը գնաց ներողություն խնդրեց Արծվից, Սիրամարգից, Բվից և Կաչաղակից։ Իսկ Սագոյի՞ն... Ընկերաբար խփեց ուսին, և ամեն ինչ դրանով վերջացավ։ Այդ գիշեր Թութակը հանգիստ ու խորը քնեց մինչև առավոտ։ Եվ դրանից հետո ով ինչ ասում էր, նա հավանություն էր տալիս ու բարեխղճորեն կրկնում դիմացինի խոսքերը։ Այնքան կրկնեց, որ լեզվի կանոնները մոռացավ, և երբ նրան ասում էին՝ Թուլամորթ ես, նա բառացի պատասխանում էր՝ Թուլամորթ ես։ Լսողը չէր բարկանում, որովհետև համոզված էր, որ Թութակն ուզում է ասել, թե ինքն է թուլամորթը։ Եվ պատկերացրեք, որ նա դարձավ բոլորի «սիրելին»։ Բայց վա՜յ էն սիրելուն։ Ծաղրով, արհամարհանքով սե՞ր կլինի։ Ամեն թռչուն առիթ բաց չէր թողնում նրա վրա ծիծաղելու համար։ Հետո էլ խղճահարվելով, իր փետուրներից մեկը նվիրում էր, թե՝ «Կպցրու կրծքիդ, թևերիդ, որպեսզի ավելի սիրուն լինես»։ Նա էլ նրանց ասածն անում էր։ Այդպես էլ բոլոր թռչուններից մի-մի փետուր վերցնելով, նա կորցրեց իր նախկին գույնը, ինչպես որ կորցրել էր իր ինքնուրույն ձայնը։ Հիմա խեղճը չի էլ հիշում, թե առաջ ի՞նչ գույն ուներ կամ թե ինչպե՞ս էր երգում։ Հիմա բոլո՜ր, բոլո՜ր թռչուններն ունեն իրենց յուրահատուկ ձայնը, իրենց սեփական փետուրները, իսկ նա ոչ մեկն ունի, ոչ էլ մյուսը։

# ՓՈՔՐԻԿ ՍՊԱՍՈՒՀԻՆ

*ԱԲԴ. ԱՐ-ՌԱԽՄԱՆ ԱԼ-ՀԱՄԻՍԻ*

(Արաբ. գրող)

Մի ամիս է անցել այն օրվանից, երբ Դախաբը հայրենի գյուղից տեղափոխվել է Կահիրե։ Բայց նա չի կարողանում պահել օրերի, շաբաթների և ամիսների հաշիվը, որովհետև դեռ յոթ տարեկան էլ չկա։ Ըստ նրա հաշիվների, շատ ու շատ ժամանակ է անցել այն օրվանից, երբ ինքը բաժանվեց մայրիկից, հայրիկից, իրենց գյուղի դաշտերից և այն ամենից, որոնք այնպե՜ս ուժեղ ու հաստատ կերպով տպավորվել են նրա մանկական հիշողության մեջ։

Փոքրիկ, վշտահար աղջիկը նույնիսկ չգիտի, թե ինչի համար են իրեն քաղաք բերել։ Նրան հայտնի չէ նաև այն, որ այդ քաղաքը կոչվում է Կահիրե։ Նա չի կարողանում հասկանալ, թե ինչպես է դա պատահել, միայն հիշում է, որ մի գիշեր հայր Աբդելբասիտը եկավ տուն ու ասաց.

— Դախա՛բ, էգուց առավոտ շուտ բեկի հորեղբոր աղջկա հետ դու պիտի մեկնես քաղաք։



Դախաբը չէր կարող իր պարզունակ խելքով հասկանալ այն ամենը, ինչ ասում էր հայրը։ Նրա համար միայն մի բան էր պարզ։ Նա ևս պիտի գնա հարազատ Գերիտից, ինչպես որ գնացել էին նրա քույրերը՝ Սելիմին ու Նաֆուսան։

Այդ գիշեր նա քնեց իր մոր գրկում։ Հենց որ արևը ծագեց, հայրը արթնացրեց իր փոքրիկ աղջկան, բռնեց թաթիկից ու տարավ։ Մայրը նետվեց գրկեց Դախաբը, լաց եղավ, համբույրներով ծածկեց նրա դեմքը։ Բայց Աբդելբասիտը խլեց երեխային մորից, հրեց նրան ոտքով։ Կինը երեսնիվայր շրջվեց գետնին։



—Դու քո հոգուն մեղք ես անում, Արդեյրասախտ,— ճչում էր մայրը՝ իրեն կորցրած:— Չեմ ուզում, որ խոս բաժանես Դախարից, թեկուզ ամիսը մի փոխոս վճարեն: Բոլոր աղջիկներն էլ աղախնություն են անում, նրանք բոլորն էլ հեռու տեղերում են: Թող գոնե էս մեկին՝ Դախարին: Արդեյրասախտ, դու հոգուդ մեղք ես անում, մեծ մեղք:

Որքան հեռանում էր Արդեյրասախտը դեպի խճուղին, այնքան ավելի թույլ էր լսում լացող մոր ձայնը:

Միայն Դախարը դողդողում էր նոր ձեռքերում, իր թախծոտ հայացքը մերթ ընդ մերթ շրջում էր այն կողմը, որ ընկել էր մայրը: Վախից նրա փոքրիկ սիրտը արագ բաբախում էր:

Հասնելով ճանապարհի ծայրին, Արդեյրասախտը իջեցրեց աղջկան, շփեց թեղերը, հոգոց քաշեց և, կկոցելով աչքերը, նայեց խճուղու երկարությամբ: Նա հեռվից նկատեց մոտեցող մի մեքենա: Ճոտով պարզ երևաց, որ մեքենան տիրուհուն է՝ բեկի հորեղբոր աղջկանը: Նա ժպտաց և դառնալով իր աղջկան, ասաց.

— Տիկնոջ հետ կգնաս քաղաք, Դախար:

Մեքենայի դուռը բացվեց, և երևաց նուրբ հագնված մի կին:

—Սա քո աղջի՞կն է, Արդեյրասախտ,— հարցրեց նա:

Ուրախությունից փայլելով, Արդեյրասախտը պատասխանեց.

— Այո՛, սա Դախարն է, ձեր փոքրիկ սպասուհին

— Ես սիրում եմ այդպիսիներին դաստիարակել իմ տանը,— և տիկինը հանեց պայուսակից մի թղթադրամ, մեկնեց Արդեյրասախտին:

— Սա՞ ցի՛ր, նախօրոք եմ վճարում. մի ամսվա ռոճիկն է:

Վարորդը բռնեց աղջկա ձեռքից, նստեցրեց իր կողքին: Իսկ առջևում կուրացուցիչ կերպով սպիտակին էր տալիս Գերիտից Կահիրե տանող ճանապարհի ժապավենը:

Հենց որ մեքենան շարժվեց, աղջիկն սկսեց լաց լինել, բայց վարորդը գոռաց նրա վրա, խփեց գեմքին: Դախարը վախեցած ետ քաշվեց, հետո մի կերպ հանգստացավ, սառավ, քար կտրեց:

Մեքենան կանգ առավ Գարդեն Սիտի փողոցի վրա գտնվող տներից մեկի առաջ:

Վարորդը քաշեց աղջկա ձեռքից: Նա սթափվեց և լսեց գեղեցիկ տիկնոջ ձայնը.

— Դու՛ քո եկ, դու՛ քո եկ:

Բայց աղջիկը չգիտեր, ինչպես պետք է դուրս գալ մեքենայից: Այդ ժամանակ վարորդը բացեց դուռը, ցրեց Դախարին: Նա շփոթված գետնին, գեմքը կպավ մայթին, ու խղճալի տնքաց:

Տիրուհին բարկացավ.

— Ի՞նչ է պատահել, թող այս փնթիին անմիջապես տանեն բաղնիք:

Դախարին անմիջապես տարան վեր: Աղջկա ճակատից արյուն էր հոսում: Նրան մաքրեցին բաղնիքում, լողացրին, սպիտակ շորերով զուգեցին, հագցրին կոշիկներ, գլխին փաթեցրին կանացի գլխազարդ:

Նա այնպես էր ուրախացել իր հագուստով, որ նույնիսկ վշտերը մոռացավ և սկսեց գիտել անծանոթ կահավորումը: Երբ երեկոյան վառվեց էլեկտրական լույսը, Դախարը շշմել էր: Այս տան ամեն ինչը նրան զարմացնում էր. գորգերը, բազկաթոռները, ջահերը, հայելիները...

Առաջին ութ օրը նրան թվաց, թե ինքը երջանիկ է: Բայց հետո եկան սարսափելի կսկիծով ու ահով լի շատ ու շատ օրեր, և այս ամենից նրա մանուկ սիրտը լցվեց մորմոքով:

Նրան սովորեցնում էին ինչ-որ տարօրինակ, անհասկանալի բաներ.

— Եթե դու տեսնում ես, որ գալիս է միզանից որևէ մեկը, պիտի անմիջապես ոտքի կանգնես. դա հարգանքի նշան է:

— Այս բաժակը մատուցարանի վրա դրած տար հյուրասենյակ, մատուցիր, հետո խոնարհվիր, բայց նայի՛ր, Դախա՛ր, չմպտաս, հետո դուրս եկ, բայց անպայման դեմքդ՝ դեպի պարոնները, մեջքդ՝ դռների կողմը:

— Քո փոքրիկ պարոնը եկել էր խոհանոց, դու խփեցիր նրան, Դախա՛ր, դրա համար էլ քեզ արյունելիս արին:

— Եթե որևէ մեկը քեզ կանչում է, դու պիտի պատասխանես. «Լսում եմ ձեզ, տեր իմ»:

Նրան տալիս էին չափից ավելի այդպիսի խրատներ ու հրամաններ: Բայց աղջիկը անմիջապես մոռանում էր և վարվում էր այնպես, ինչպես սովոր էր: Այդ դեպքում նրան ծեծում էին այնքան, որ նրա փափուկ մարմնի վրա երևում էին արյան շիթեր: Տանտերն ուներ մի փոքրիկ տղա, գրեթե նույն հասակի: Նրա անունը Երանիկ էր: Նա խաղում էր ամեն տեղ, ուր ուզում էր: Դախարն էլ ուզում էր խաղալ ու զվարճանալ, բայց նրան համառորեն հեռանում էր տիկնոջ դաժան հայացքը, որը Դախարի հոգին լցնում էր սարսափով:

Մի անգամ Երանիկի ձեռքին Դախարը տեսավ փայտե ձի և խանդաքարուհուն ասաց.

— Վերցրու իմ սպիտակ շորը և նրա տեղ էլ ձին տուր:

Դեր խոհարարուհին միայն ծիծաղեց:

— Տեղդ նստիր, ոչինչ մի՛ խնդրիր, խելագար:

Անցել էր մի ամիս, բայց Դախարն արդեն մի քանի անգամ ծեծ էր կերել:

Եվ ահա վրա հասավ իրոք որ դաժան մի գիշեր։

Աղջիկը երազում էր խաղալ փայտե ձիու հետ, որը փոքրիկ անիվների վրա գնում էր հատակի վրայով. Իբրահիմը բշում էր նրան մի սենյակից մյուսը։

Հենց նոր էր վերջացել ընթրիքը, և Դախաբը մյուս սպասուհու հետ դատարկ ափսեները տանում էր խոհանոց։ Նրան հաճախ պատժում էին այն բանի համար, որ ափսեները ընկնում էին ձեռքից ու փշրվում։ Բայց բավական էր հիշել ձիու մասին, որ անմիջապես մոռանար ամեն մի ծեծ։ Աղջիկը երազում էր ձին քշել ամբողջ տնով մեկ, ինչպես դա անում էր Իբրահիմը։ Նրա ուշքն ու միտքը միայն ու միայն ձին էր, և Դախաբը բոլորովին չնկատեց, թե ինչպես ափսեն դուրս պրծավ ձեռքից ու ընկավ, փշուր-փշուր եղավ։

Դախաբը վախից քարացավ։ Նա այդպես էլ կմնար, եթե չգար խոհարարուհին։ Տեսնելով վախեցած ու շփոթված աղջկան, նա խղճահարվեց և նրա ականջին բշփշաց. «Բոլորը հավաքի ու տար խոհանոց»։ Դախաբն սկսեց լալ։

Բայց նա հիշեց ձին։ Նրա դեմքը փայլեց երջանկությունից։ Աղջիկը դուրս եկավ խոհանոցից և գնաց ննջասենյակ, ուր Իբրահիմը սովորաբար գիշերը թողնում էր ձին։ Տիկինը լսելով փոքրիկ աղախնի քայլերը, կարծեց, թե Իբրահիմը դեռ չի քնել, և շտապեց մանկական սենյակ։ Դախաբը փոքրիկ ձեռքերով ձին կրծքին սեղմած, դուրս էր գալիս սենյակից, երբ բախվեց տիկնոջը։ Ահա թե ով է եղել այս սպասուհին. ուրեմն նա գող է։

Տիկինը տարավ բերեց ու ամբողջ թափով ապտակեց նրա դեմքին։ Դախաբը ճչաց ու ընկավ գետնին։ Տիկինը զազրազած հարձակվեց նրա վրա և սկսեց խփել բռունցքներով։

— Դու չէի՞ր ուզում գողանալ, դու չէի՞ր մտել Իբրահիմի սենյակը և դուրս բերել ձին։

Ճչոցի վրա վազեց եկավ խոհարարուհին։ Նա լուռ հետևում էր այս զարհուրելի պատկերին։ Տիրուհին ծեծելուց ուժասպառ եղավ և ասաց խոհարարուհուն։

— Հեռացրու՛ սրան ինձնից։ Քնեցրու հատակին, իսկ առավոտյան այս գողին ուղարկիր գյուղ։

Քիչ անց բոլոր տնեցիներն էլ քնեցին։ Դախաբին տեղավորեցին պատշգամբում։ Նա պառկել էր հատակին՝ առանց որևէ բան վրան գցելու։

Ցավում էր աղջկա ծեծված մարմինը։ Նա դառը լաց էր լինում։

Դախաբը տեսավ մի հրաշալի, քաղցր երազ, որ հանգստացրեց ծեծկված մարմինն ու հոգու տանջանքը։ Եվ ահա թե ինչ տեսավ նա երազում։

Լայնարձակ դաշտում հասկավորվել է ցորենը։ Մայր մտնող արևը իր վերջին ճառագայթներն է նետում շրջակա բլուրների ու բարձր ծառերի վրա։

Դախաբը էլի գյուղի երեխաների մեջ է։ Նա նրանց հետ քարկտիկ է խաղում։ Գետնին դրված է չորս քար, իսկ հինգերորդը նետում են վեր։ Մինչ քարը վեր է թռչում, պետք է հասցնել վերցնելու գետնի վրայի չորս քարերը և բռնել օդում եղած քարը։

Այդտեղ է նաև Իբրահիմը, նա նույնպես խաղում է նրանց հետ։

Հանկարծ էլի երևում են ինչ-որ երեխաներ, և ահա ամբողջ խումբը ճղճղոցով ու ծիծաղով գնում է դեպի ջրհորը։

Մոտենում է նաև Դախաբը, բարձրանում է քարի վրա, հետո ներքևում տեսնում է ջրհորը և ընկնում է նրա մեջ...

Այս ամենը տեղի է ունենում երազում։ Իրականում տեղի էր ունեցել հետևյալը։

Բլուրը, որտեղ բարձրացել էր Դախաբը, պատշգամբի եզրն էր։ Քարերը, որոնցից նա բռնել էր երազի մեջ, պատշգամբի ելուստներն էին։ Ջրհորը, որի մեջ նա ընկել էր, գիշերվա վիհն էր։

Աղջիկը պատշգամբից ընկել էր Գարդեն Սիտի փողոցը...

Վազեցին եկան ոստիկանները և տեսան Դախաբի այլանդակված դիակը։ Ասում էին, որ աղջիկը ընկել էր յոթերորդ հարկից և տեղն ու տեղը մահացել։ Բայց ոչ ոք չմտածեց այն մասին, թե ինչը նրան նետեց անդունդը։

Ռուս. Թարգմ. Ռ. ՄՈՎՍԻՍՅԱՆ





Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆ

# ԱՐՋՈՒԿ ԽԵՆԹՈՒԿԸ

ԼԻԶԱ ՍԱՐԳՍՅԱՆ

(Հեքիաթ)

Նկ. ԿԱՐԵՆ ՄԱՐԲԱՏՅԱՆԻ



Հեռո՜ւ, հեռո՜ւ թավ անտառում,
Իր հարազատ հոր ու մոր հետ,
Կյանք էր քաշում, անհոգ ապրում
Երես առած Արջուկը խենթ։
Ելնում էր նա առավոտ վաղ
Ու անտառը վազում անվախ։
Մեկ ծառերն էր նա մագլցում
Ու ծտերին վախեցընում,
Մեկ թավալվում ու պար գալիս,
Աղվեսին էր ոտ դեմ տալիս,
Մեկ թփերի տակից թաքուն
Նապաստակի պոչն էր պոկում...
Ու խաղում էր ամբողջ օրը,
Մինչև արևն իջներ ձորը։

Եվ ամեն օր, այդ ուշ ժամին,
Մայրը նստած դռան շեմին,
Սպասում էր մինչև տուն գար
Իր անպիտան քոթոթը չար։
Իսկ քոթոթը այդ կեղծավոր
Գիրկն էր նետվում իսկույն իր մոր,
Պինդ-պինդ գրկում, շոյում, սիրում,
Դունչն էր լիզում ու համբուրում։
Հետո արագ վազում էր տուն
Ու սեղանի առջև նստում
Եվ ինչ տեսներ այնտեղ դրած,
Խփշտում էր, ուտում ձեռաց։
Իսկ գիշերը անտառ մտնում,
Քաղցր մեղր էր այնտեղ փնտրում
Ու ճանկելով մի լավ փեթակ,
Ջարդոտում էր ոտքերի տակ։
Օ՜, ի՜նչ աղմուկ... տզտզալով
Մեղուներն են նրան խայթում,
Իսկ Արջուկը հաստ թաթերով
Հարվածում է ու կոխոտում։
Մեղրն ուտում, պար է գալիս,
Գետն է մտնում ու լող տալիս,
Տիղմ է խառնում պաղ ջրերին
Ու բարկացնում ձկնիկներին...
Եվ բոլորն էլ դժգոհ էին,
Խռով էին Արջուկի հետ,



Որովհետև սարսափելի
Կոպիտ էր նա, չար ու անգետ...
Մի անգամ էլ հավաքվեցին
Կենդանիներն անտառի մոտ,
Որ լավ դաս տան այդ ծուռթաթին,
Խենթ Արջուկին այդ անամոթ։
Եվ ահագին մի խումբ կազմած,
Արշավեցին նրանք առաջ։
Խմբի առջև, պարզած դրոշ,
Գնում էին գայլերը գորշ,
Հետո վագրի ձագուկները,
Հետո վայրի կատուները,
Նապաստակներն հետո շլդիկ,
Աղվեսները սրադնչիկ,
Եվ ծերունի կույր Խլուրդը,
Եվ հավքերի ողջ սերունդը,
Ու պոչից էլ, լուռ, անշրշյուն,
Գնում էր մի փոքրիկ ջրշուն...
Իսկ Արջուկը ի՞նչ իմանար,
Այդպիսի բան չէր սպասում,
Եղևնու տակ նա իր համար
Հանգիստ պառկած, երգ էր ասում։
Բայց սև երգել բերին գլխին,
Վերջին խոսքը բերնում թողին.
Ամեն կողմից վրա հասան
Ու Խենթուկին մի լավ տեսան։
Մեկն ականջից է քաշքշում,
Մեկը քացով տալիս փո՛րին,
Քաշքշում են, կծում, ծեծում,
Վա՜յ, խենթ Արջուկ, վա՜յ քո օրին...
Միայն ծերուկ Խլուրդն էր, որ
Աղմուկի մեջ այդ ահավոր,
Զգուշորեն ու կամացուկ,
Շշնջում էր արջին ծածուկ.
— Լսի՛ր, Խենթուկ, խելքի արի,
Եղիր համեստ, եղիր բարի,
Մի բարկացրու նրանց իզուր,
Քեզ կգզեն ճանկերով սուր։
Լավ է թաթդ պարզես նրանց,
Ներողություն խնդրես սրտանց,
Թեև շատ ես կոպիտ ու չար,





# ԲԱՐԻ ԼՈՒՅՍ, ՄԱՅՐԻԿ

ԽԱԺԱԿ ԳՅՈՒԼՆԱԶԱՐՅԱՆ



Ես մեր բակի ամենալավ Գեղամն եմ։ Ասենք մեր բակում միայն մի Գեղամ կա. մի Գեղամ, երկու Ռուբիկ, մի Ռուդիկ, չորս Արա, աղջիկներին չհաշված։

Ես ամեն օր մայրիկին ասում եմ.

Բարի լո՜ւյս, մայրի՛կ։

Նա համբուրում է ինձ, հետո կաթ է տալիս կամ... ձկան յուղ։ Կաթը լավ է, ձկան յուղը վատ, այնքան վատ, որ ես առավոտները չեմ ուզում արթնանալ։ Ասենք արթնանում եմ, բայց աչքերս փակում եմ, որ մայրիկը չիմանա։

Ես մեր բակի ամենալավ Գեղամն եմ։ Մայրիկն ամեն օր այդպես է ասում ինձ ձկան յուղ խմեցնելիս։ Ես էլ ձկան յուղը խմում եմ, քանի որ մայրիկս այդպես է ասում...

* * *

Ես ափսեն կոտրեցի. բանն այն էր, որ մեջը մուրաբա կար։ Ասացի, թե փիսոն է կոտրել։ Մայրիկը հավատաց, մայրիկն ամեն ինչի հավատում է։

— Վատ է, — ասաց, — փիսոյին պիտի տնից քշել։

Քշեց։

Քնեցինք։

— Բարի լո՛ւյս, մայրի՛կ, — առավոտյան ասացի մայրիկիս։

Նա համբուրեց ինձ, հետո ձկան յուղը բերեց.

— Դու մեր բակի ամենալավ Գեղամն ես, — ասաց։

Ձկան յուղը խմեցի։

Իսկ փիսոն չկար, նրան մայրիկը դուրս էր արել։

— Խաղա, — ասաց մայրիկը, — ես գնում եմ շուկա։

Գնաց։

Մենակ հետաքրքիր չէր։ Խաղացի, ձանձրացա, հետո բակ գնացի։ Տղաներն ինձ քշեցին։

— Փոքրիկ ես, — ասաց մի Արա։

— Ոտի տակ մի՛ ընկնի, — ասաց մի Ռուբիկ։

Գնացի տուն։ Հետո դրսում անձրև եկավ։ Տղաները բակից հեռացան։ Իսկ փիսոն երևի թրջվեց. նրան մայրիկը դուրս էր արել...

Տխրեցի։

Ամբողջ գիշեր անձրև էր գալիս, իսկ ես մտածում էի ափսեի մասին, որի մեջ, հակառակի նման, մուրաբա կար, դրա համար էլ ընկավ, կոտրվեց։ Մտա-

Բայց կներեն քեզ անպատճառ։ —
Եվ Արջուկը նրան լսեց.
Գժությունից իր ձեռք քաշեց.
Դարձավ բարի, խոնարհ ու հեզ
Ճիշտ այն Խլուրդ պապիկի պես։
— Կեցցե՛ս, — ասաց Խլուրդը ծեր, —
Լավն է, լավը արջուկը մեր։ —
Ու գազաններն ուրախ ասին,
— Ջա՛ն, կխաղանք միշտ միասին։ —
Եվ ի՜նչ աղմուկ էր բացատում,
Երգում էին ու թռչկոտում։
Ծառերն էին կազմել շրջան.
— Այսպես լավ է, չէ՞, Արջուկ ջան,
Թե միշտ այդպես խելոք մնաս,
Բարեկամներ շատ կունենաս։



ծում էի, իսկ արցունքս գալիս էր։ Հետո քնում էի, իսկ փիսոն երազումս գալիս նստում էր անկյունում, թաթով սրբում էր աչքերն ու տխուր-տխուր մլավում...

Առավոտյան մայրիկին ասացի.

Բարի լու՜յս, մայրի՛կ։

Նա ձկան յուղը բերեց.

— Դու մեր բակի ամենալավ Գեղամն ես։

— Չէ՛, մայրիկ, — ասացի, — փիսոն մեղք չունի, ափսեն ե՛ս եմ կոտրել, մեջը մուրաբա կար...

Մայրիկը համբուրեց ինձ.

— Ապրես, որ ասացիր, էլ չանես։

Փիսո՜ն...

Կբերենք, — ժպտաց մայրիկը։

* * *

Փիսոյին տուն բերինք։

Որ իմանաք, թե ինչքա՜ն լավ է։ Ամեն առավոտ մայրիկիս ասում եմ.

Բարի լու՜յս, մայրիկ։

Նա բերում է ձկան յուղը.

Դու մեր բակի ամենալավ Գեղամն ես...

Փիսոն անկյունում խաղում է իմ թավշե արջուկի հետ։

Լա՜վ է, շա՜տ լավ է, չնայած օրն սկսվում է ձկան յուղով...



## ԿԱՉԱՂԱԿԻ ԵՎ ԱԳՌԱՎԻ ԿՌԻՎԸ

ԱՐՇԱՎԻՐ ԴԱՐԲՆԻ

Մի կաչաղակ
Ու մի ագռավ,
Մեկը՝ ջահել,
Մեկը՝ պառավ,
Աղմկում են,
Իրար գզում,
Կոշտ ու կոպիտ
Խոսքեր ասում։
Ագռավը թե՝
— Դո՛ւ գողացար...
Կաչաղակը՝
— Ջը՛րթ, չափն անցա՛ր...
— Դա՜, ձու ուտող,
Ապակու գող...
— Ի՞նչ ասացիր,
Ջը՛րթ, դիմացիր։
Հիմա պոչդ փետրահանեմ,
Բմբուլներդ երկինք հանեմ...
— Խելքի արի.
Թե չէ գիտես...
— Մի էս մրոտ
Ագռավին տես...
— Դա՜, երկար պոչ...
— Ջը՛րթ, սև բլոճ...
Ծաքանում են, կտցով զարկում,
Իրար խայթում ու անարգում։
Դրկից լորը
Հարց է տալիս մոշահավին.
— Չեմ հասկանում
Կաչաղակին ու ագռավին։
Ինչու՞ են զուր
Վիճում, կռվում,
Ծառից ընկնում,
Գետնին փռվում։
Պատճառն ի՞նչ է,
Ա՛յ աչքի լույս։
— Պատճառն ի՞նչ է՝
Մի փուչ ընկույզ...

Նկ. ՍԵՅՐԱՆ ԽԱԹԼԱՄԱՋՅԱՆԻ



Նկ. ԼԻԴԱ ԽԱՆԱՄԻՐՅԱՆԻ

# Գիտուն կատուն

(Իտալական հեքիաթ)

Պալերմոյում մի պարծենկոտ արքայազն էր ապրում: Նա ասում էր, թե կարող է վերափոխել աշխարհը: Եվ իբր թե ձիուն սովորեցրել է միս ուտել, շանը՝ խոտ արածել, իսկ էշին՝ տարանտելլա պարել:

Բայց արքայազնը ամենից շատ պարծենում էր իր գիտուն կատվով: Փարթամ կեղծամներով ու սև քղամիդներով տասը գիտնական տասը տարի շարունակ ուսում էին տալիս նրա՛ն: Արքայազնը նույնպես շատ ջանք էր թափել, որ կատուն մոռանա իր կատու լինելը:

Երբ արքայազնը հասավ նպատակին, իր ընկերներին ասաց.

— Վաղը ինձ մոտ ընթրիքի եկեք և դուք կհամոզվեք, որ մարդը կարող է բնությունը վերափոխել. դա կապացուցի իմ կատուն:

Ընկերներն ընդունեցին հրավերը: Բայց մեկը, մի խելոք երիտասարդ, մտածեց. «Եթե խոսքը կատվի մասին է, վատ չի լինի մի մուկ տանեմ հետս»:

Նա այդպես էլ արեց:

Հաջորդ օրը բոլորը հավաքվեցին պալատի տոնական սրահում, որտեղ դրված էր մի շքեղ սեղան: Իսկ սեղանի մեջտեղում անշարժ, ինչպես փայտե արձան, կանգնած էր գիտուն կատուն՝ թաթերով բռնած վառած մոմը:

Երբ հյուրերը նստեցին, ծառաներն սկսեցին մսով ու ձկով պատրաստված համեղ կերակուրներ բերել: Այնպիսի ախորժալի հոտ տարածվեց, որ հյուրերի բերնի ջուրը գնաց: Իսկ կատո՞ւն: Կատուն անգամ բեղը չշարժեց և շարունակում էր պահել մոմը:

Արքայազնը նայեց հաղթական հայացքով և բացականչեց.

— Բա որ ասում է՜ի: Համոզվեցի՞ք, որ արվեստը բարձր է բնությունից:

— Իհարկե, իհարկե,— գոչեցին ապշած հյուրերը:

Միայն մեկը լուռ էր: Նա վերցրեց իր փետրազարդ գլխարկը և մկանը թաքուն բաց թողեց:

Ազատություն ստացած մուկը գլխարկի տակից դուրս հանեց իր սուր դունչը: Եվ կատուն տեսնելով մկանը, անմիջապես մոռացավ այն, ինչ սովորեցրել էին տասը գիտնականներն ու արքայազնը: Մոմը թռավ մի կողմ, զնգացին ջարդված բաժակները, իսկ կատուն բռնեց մկանն ու փախավ:

Այդպիսով, պարծենկոտ արքայազնին չհաջողվեց, ոչ թե աշխարհը, այլ նույնիսկ կատվի ցեղը վերափոխել:

Ռուսերենից թարգմանեց՝
ՎԱՐՈՒԺԱՆ ՏԱՐՈՆՑԻ



# ՋՈԼԼԻ

*(Անգլիական հեքիաթ)*

Ջոլլին չաղլիկ խոզուկ էր: Նա շարունակ ուտելու բան էր փնտրում: Մի օր պուրակում գտավ մի կույտ կանաչ խնձոր և բոլորն էլ լափեց:

Խեղճ խոզուկի փորն սկսեց սաստիկ ցավել: Մայրը նրան պառկեցրեց անկողնում և տվեց մի դառնահամ դեղ:

— Եկեք Ջոլլիի գլխին մի խաղ խաղանք,— մի օր ասաց գառնուկը:

Բադերն ու հավերը համաձայնեցին և բոլորը միասին սկսեցին մտածել շատ լուրջ, թե ի՛նչ անեն: Վերջապես նրանք գտան մի հիանալի հնարք:

«Խոզուկին ասենք, որ ծառի փչակում ուտելու լավ բան կա»:

Ուրախությունից խենթացած խոզուկը տուն վազեց, մի կտոր հաց դրեց գրպանը, որ ճանապարհին սովածանալու դեպքում ուտի և վազեց դեպի ծառը: Նա ուզեց մագլցել ցանկապատի վրայով, բայց այն շատ բարձր էր: Փորձեց սողոսկել նրա տակով, բայց անցքը շատ նեղ էր: Ճիշտ մեջտեղում սեղմվեց ու մնաց, բայց երկար չարչարանքից հետո, վերջապես, այնտեղից անցավ:

Շատ չարչարվելուց հետո Ջոլլին զգաց, որ սոված է, նստեց հաց կերավ: Ապա իրեն լավ զգալով, նա սուրաց դեպի փչակավոր ծառը: Ճանապարհին խոտերն ու կոկոն ծաղիկները դարձյալ գրգռեցին նրա ախորժակը, նա մեկ ուտում էր, մեկ վազում:

— Հեյ, Ջոլլի, մի քիչ էլ ինձ թող,— կանչեց հորթուկը,— դու արդեն բավական չաղ ես:

Գառնուկն ու իր ընկերները ծառի փչակում մի խնձոր կապեցին պարանով և թաքնվեցին:

— Նայեցեք այն շատակերին,— ասաց գառնուկը,— նա նույնիսկ հորթուկի խոտերն է արածում:

Ջոլլին խռխռալով հասավ ծառին:

«Ինչ-որ անուշ հոտ է գալիս,— ասաց նա,— որ գրգռում է իմ ախորժակը»:

Ջոլլին իր գլուխը մտցրեց ծառի խոռոչը, բայց քանի որ դունչը խնձորին չէր հասնում, գալարվելով ավելի ու ավելի ներս սողոսկեց:



Գառնուկն ու իր ընկերները տեսնելով նրան, սկսեցին բարձրաձայն ծիծաղել:

Հանկարծ աղմուկ բարձրացավ: Փչակից լսվեց մի ճիչ ու թևերի բախում, և խոզուկն սկսեց բարձր ճղճղալ.

— Օգնություն, օգնություն, մի մեծ թռչուն կտցահարում է իմ քիթը:

— Դո՛ւրս, դո՛ւրս կորիր,— ճչում էր խորունկ քնից արթնացած բուն:

— Չեմ կարող, կպած եմ,— ճղճղում էր խոզուկը,— ա՛խ, քիթս: — Եվ որքան գալար-



վում ու չարչարվում էր, իր չաղիկ փորը դուրս չէր գալիս փչակից:

—Հա՜, հա՜, հա՜,—ծիծաղում էին գառնուկն ու իր ընկերները: Այդ քեզ պիտի սովորեցնի այդքան շատ չուտել:

Նրանք ծիծաղում էին ու ծիծաղում, իսկ Ջոլլին գալարվում էր ու չարչարվում:

Ի վերջո, հավը խղճաց նրան և Ջոլլիի պոչից պինդ բռնելով, սկսեց քաշել ու քաշել: Մյուսներն էլ եկան օգնության: Խեղճ խոզուկը դեռ ճղճղում էր ու լաց լինում, բուն իսկապես շատ էր կայրացել: Կենդանիների չարաճճիությունը նրան սաստիկ անհանգստացրել էր: Նա չէր սիրում խոզուկներին, որոնք ամեն տեղ խոթում են իրենց քիթը, նույնիսկ իր փչակը:

— Օ՜ֆ, չեն թողնում մարդ իր համար խաղաղ ապրի, հանգիստ քնի...

Գառնուկն ու մյուսները հա՜ քաշեցին, քաշքըշեցին, մեկ էլ, հո՛պ, Ջոլլին դուրս պրծավ փչակից, ընկավ մեջքի վրա ու գլորվեց ծորն ի վար: Գնա՜ց, գնա՜ց ու հասնելով ծորի հատակը, պառկեց-մնաց, ոտները վեր ցցած: Հորթուկը տեսնելով նրան, ասաց.



— Ուղղակի պարուշի մեկն ես դու:

— Ա՜խ, շատ շնորհակալ եմ, որ ինձ ազատեցիք նեղ տեղից,—ասաց խոզուկը: Սրանից հետո էլ այդպիսի բան չեմ անի...

*Անգլերենից թարգմանեց՝ Վ. ԳԱԼՍՏՅԱՆ*





# Ի՞նչ կա որ...

Վ. ԳՈԼՅԱՎԿԻՆ

Դու էլի՞ առանց գլխարկի դուրս վազեցիր այս ցրտին։

— Ի՞նչ կա որ, — ասում է Պետիկը։

— Դու դարձյա՞լ դասի ժամանակ շատախոսել ես։

— Ի՞նչ կա որ, — ասում է Պետիկը։

— Դու էլի՞ ասացիր՝ «Ի՞նչ կա որ»։

— Իսկ ի՞նչ կա որ, — ասում է Պետիկը։

Ուղղակի ոչինչ չի կարելի հասկացնել նրան։

Մի անգամ Պետիկը պառկեց քնելու և ահա թե ինչ երազ տեսավ։

Գնում է ինքը ճանապարհով։ Դիմացից հնդուկն է դուրս գալիս։

— Կրու-կրո՜, — ասում է հնդուկը։

— Ոչ թե «կրու-կրու», այլ կ՛ա ինձ՛, — ասում է Պետիկը։

— Ի՞նչ կա որ, — ասում է հնդուկը։

Պետիկը զարմանում է և շարունակում ճանապարհը։

Մեկ էլ դիմացից հավիկն է դուրս թռչում։

— Ինձա՜, ինձա՜, — ասում է հավիկը։

— Ոչ թե «ինձա՜, ինձա՜», այլ կա՛, կա՛, կա՛, կա՛, — ասում է Պետիկը։

— Ի՞նչ կա որ, — ասում է հավիկը։

Պետիկը զարմանում է և շարունակում ճանապարհը։

Դիմացից վազում է ուղտը.

— Մյաու՜, մյաու՜, — ասում է ուղտը։

— Ոչ թե «մյաու՜», այլ ինչ-որ ուրիշ կերպ, — ասում է Պետիկը։

— Ի՞նչ կա որ, — ասում է ուղտը։

Նորի՜ց «ի՞նչ կա որ» — բղավում է Պետիկը։ Եվ արթնանում, նստում է անկողնու վրա և մտածում՝ «Ինչ լավ է, որ երազ էր»։

Այդ օրվանից նա այլևս չասաց «ի՞նչ կա որ»։

Թարգմ. Ա. ՎԱՐԴԱՆՅԱՆ



ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

## ՈՒՐՈՒՐՆ

Կար կչկչան մի հավիկ,
Ուներ քսան սիրուն ճուտ,
Տատը հավ ու ճտերին
Միշտ տալիս էր ջուր ու կուտ:
Ճուտիկները հատակին
Խփում էին.— Կա՛տ, կա՛տ, կա՛տ,—
Կարծես ասում տատիկին՝
— Կուտը, կուտը շա՛տ, շա՛տ, շա՛տ:—
Ու երբ բակում միասին
Երգում էին—Կո՛, կո՛, կո՛,—
Ասում էին այն մասին,
Որ տատիկից գոհ են, գոհ:

Տատը կորեկն ու գարին
Միշտ տալիս էր անխնա,
Բայց մի անգամ ճտերին
Մոռացել էր ջուր տալ նա:
Շոգ էր դրսում ու երաշտ.
Հավ մայրիկը.— Կո՛ւռ, կո՛ւռ, կո՛ւռ,—
Ճտերն առած ընկավ դաշտ՝
Որոնելու ջո՛ւր, ջո՛ւր, ջո՛ւր:
Անցավ թփեր կանաչան,
Անցավ բլուր մի հսկա,
Տեսավ մի մեծ ավազան
Ու կչկչաց.—Կա՛, կա՛, կա՛:—



# ԿԱՐՏՈՖԻԼՆ ՈՒ ՓՈՒՇԸ

ՆԱՏԱԼՅԱ ԳԻՆՈՍՅԱՆ Նկ. ՀՐԱՉԻԿ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ



Ինչպես պատահեց՝ մի աներես փուշ
Քաղհան անողից թաքնվեց զգույշ.
Կարտոֆիլի հետ հավասար աճեց,
Ուրիշի տան մեջ բարձրաձայն կանչեց.
— Նույն ծիլերն ունենք կարտոֆիլն ու ես,
Ես էլ եմ ծաղկում կարտոֆիլի պես,
Ինձ անխելք մարդիկ քաղում են, թափում,
Իսկ նրա համար թմբեր են կապում։ —
Աշունը եկավ ոսկեգույն, առատ,
Զուգվեցին նախշուն և՛ այգի, և՛ արտ.
Փուշը իր սուր-սուր փշերն արձակեց,
Իսկ կարտոֆիլը պալարներ կապեց
Ու հետո միայն դուրս եկավ հանդես.
Փխրուն, կլորիկ ու ճերմակերես։
Մարդիկ սիրեցին, շոյեցին նրան,
Փառքով ու պատվով բոստանից տարան,
Իսկ փուշը անպետք մնաց բոստանում,
Թեթև գլուխն էր տանում ու բերում։
Եվ նորից ահա նույն մարդիկ եկան
Քարերն հանեցին, փշին էլ տարան,
Նետեցին արագ մեծ կրակի մեջ։
Փուշը աղմկեց, օգնություն կանչեց,
Բայց լսողն ո՞վ էր, արժան էր նրան,
Այրվեց գլուխը՝ սերմերն էլ վրան.
Որ էլ չլինեն ոչ փուշ և ոչ քար,
Ու ազատ աճեն բույսերն օգտակար։

# ՈՒ ՀԱՎԵՐԸ

Նկ. ԱՐՄԻՆԵ ԳԱԼԵՆՑԻ



Ամռան օրին այն կրակ
Լիճը մտան պաղպաջուն
Ու չտեսան էլ նրանք,
Թե ինչպես չար մի թռչուն
Իջավ նման կայծակի,
Ոտքը գետին չդրեց
Ու ճտերի մայրիկին
Կտցին առավ, փախցրեց:
Իսկ ճտերը դեռ տխուր
Կանչում էին.—Ճեռ, ճեռ, ճեռ,
Ո՞ւր ես տանում, ուր, ուր, ուր...
Մեր մայրիկին դու ետ բեր: —

Բայց ետ չեկավ նա նորից,
Թռավ կապույտ անհունով...
Ու կոչեցին այդ օրից
Նրան «ուրուր» անունով:
Եվ այդ օրից տխրահուշ
Ամեն ճուտիկ, ամեն հավ
Ջրից մնում է վգույշ՝
Լինի այրված ու ծարավ:
Ջուր է խմում և իսկույն
Իր կտուցն է տնկում վեր,
Այն միամիտ հավերին
Չի ցանկանում նմանվել:




## ԵՐԿԱԹԵ ՄԱՆՉՈՒԿԻ ԱՐԿԱԾՆԵՐԸ

Փողոցով հապճեպ վազում էր մեկը: Այնքան մեծ էր նրան անհանգստացնող կարոտը, որ վազելիս ճանապարհին շուռ էր տալիս ավտոմեքենաներ, տապալում ծառեր, գլորում մարդկանց:

— Պերլինա, վերադարձի՛ր... Մի՛ լքիր ինձ: Ներիր, Պերլինա...— աղերսաձայն գոչում էր նա:

Ապա նա սլացավ՝ աղջկա թափած արցունքների ծիածանագույն հետքերով...

Ո՞վ էր փողոցով այդպես վազողը:

Դա երկաթե մանչուկն էր կամ Քիոդինոն: Այդպես էր անվանել նրան հայրը՝ պրոֆեսոր Պիլուկկան:

— Իսկ Պերլինա՞ն ով է,— կհետաքրքրվեք դուք:

Դե, հո բոլորի մասին չի՞ կարելի պատմել. սակայն մենք պետք է պատմենք նաև պրոֆեսոր Պիլուկկայի, անհոգի հարուստ Չիգեոտտի, սնապարծ բռնցքամարտիկ Քթաջարդի, չար պառավի, Լիլլոյի ու Լալլոյի, հիմար ոստիկանների մասին...

Այնքա՜ն շատ ու մեկը-մեկից գրավիչ են Քիոդինոյի արկածները: Այդ արկածները տեղի են ունենում Իտալիայի կապուտակ երկնքի տակ:

Իտալիայում կապուտակ երկնքից ու հրաշալի երգերից բացի, կան շատ աղքատներ: Դրանցից են նաև բարեբ Պիլուկկան, երկաթե մանչուկը, Պերլինան և ուրիշներ:

Գրքի հեղինակները՝ Մարչելլո Արջիլլին և Գաբրիելլա Պարկան, ահա թե ինչպես են նկարագրում Իտալիայի աղքատներին. «Երբ նրանք տեղ հասան, ոստիկանական մի ջոկատ, շղթա կազմած, շրջապատել էր աղբակույտերը, իսկ աղքատները, իրար հետևից շարված, անհամբեր սպասում էին, թե հիմա որտեղից որ է, ի-




րենց թույլ կտան մոտենալ աղբակույտին: Եվ իրոք, քիչ անց մի սերժանտ փողհարեց, և ոստիկանների շղթաները բացվեցին: Աղքատները քաղցած ձիուկների նման վրա պրծան ու թաղվեցին աղբերի մեջ՝ որևէ մնացորդ գտնելու հույսով:

Քիոդինոն ու Պերլինան նույնպես նետվեցին դեպի աղբակույտերը և սկսեցին ճանկերով քրքրել, բայց իզուր. ոչ մի լավ բան չգտան: Աղքատները բողոքում էին. «Նույնիսկ ոսկորի կտոր չկա, պահածոյի մի դատարկ տուփ էլ չկա, որ մարդ գոնե արանքներում մնացած կեղտերը քերի-լափի: Սա անարդարություն է...»

Այդպիսի անարդարության դեմ է պայքարում Քիոդինոն: Եվ նա հաղթում է, որովհետև ունի ազնիվ ու ոսկյա սիրտ, սիրում էր իր նման թշվառներին:

«Քիոդինոյի արկածները» նկարազարդել է իտալացի նկարիչ Բերտո Վինչոն, հայերեն է թարգմանել Գ. Վիրապյանը:

## ՍՊԻՏԱԿ ԲԱՆԱԼՈՒ ԵՂԲԱՅՐՈՒԹՅՈՒՆԸ

Իսկ այս մյուս գիրքը ի՞նչ հետաքրքիր խորագիր ունի:

Ի՞նչ եղբայրություն է դա և որտե՞ղ է ստեղծվել այդ եղբայրությունը:

Ապրիլյան մի օր, Յարկայի ծննդյան օրը, հորեղբայրը նրա համար նվեր բերեց մի մեծ, սպիտակ բանալի: Դա բանալին էր մի այգու, որը գտնվում էր քաղաքի արվարձանում, լուռ ու խորհրդավոր մի վայրում: Երբ Յարկան ու նրա ընկերները Շանդրին, Բոժեկը (որի մականունը Գնդլիկ էր), Ֆրանտիկը, Կոպեյկոն, Բրանդին և Սոուչեկը մտան այս այգին, նրանց թվաց, թե աշխարհը քաշվեց ինչ-որ հեռու, շա՜տ հեռու մի տեղ...

Սկզբում նրանք որոշում են այնտեղ «Ռոբինզոն-Ռոբինզոն», «Հնդիկ-հնդիկ» կամ «Ճանապարհորդ-ճանապարհորդ» խաղալ, բայց հանկարծ նրանց գլխում փայլատակում է մի միտք՝ ստեղծել գաղտնի միություն: Այսպես ծնվում է «Սպիտակ բանալու եղբայրությունը»:

Օ, ինչե՜ր չի անում արկածախնդիր, հնարամիտ այդ տղաների միությունը: Նրանք խորհրդավոր ու կամարակապ մի գետնափորում, որը նրանց թվում է իսկա-

կան միջնադարյան մի բանտ, հայտնաբերում են հնություններ ու նվիրում քաղաքային թանգարանին։ Նրանք այնպես են օգնում ծեր Մոուչեկին, որ նա պաշտում է տղաների խելքը։ Ճակատամարտ են մղում «կարմրամորթների» դեմ... Աշխարհագրություն, բնագիտություն ու կենդանաբանություն ինչպիսի հրաշալի դասեր է տալիս «կարմրամորթներին» գլխավոր հրամանատար Շանգրին, ինչպիսի խիզախությամբ է մենամարտում Գնդլիկը «կարմրամորթների» առաջնորդի հետ...

Բայց ամենից հետաքրքիրն այն գլուխն է, որտեղ տղաներն իրենց այգում հանդիպում են... մոլորյալ արջին։




...Մոուչեկը մտավ այգին, դռնակը ծածկեց, շուռ եկավ, որ բանալիով փակի, երբ հանկարծ ինչ-որ մեկը ձեռքը նրա ուսին դրեց։ Մոուչեկը սառեց, քարացավ, մեռելի պես գունատվեց...

Արջը շատ հնազանդ կենդանի դուրս եկավ։ Նա փախել էր կրկեսից և շատ շուտով սովորեց տղաներին։ Շատ հուզիչ է նրանց անջատումը։

Պակաս հետաքրքիր չէ նաև բռնցքամարտիկ Զիմերալի և եղբայրության անդամների բարեկամության մասին պատմող գլուխը։

Վիպակն ընթերցվում է բավական լարված, չես էլ նկատում, թե ինչպես վերջացրիր գիրքը։ Ֆրանտիշեկ Լանգերն իր վիպակի հերոսների կերպարներն ստեղծելիս, զանազան դեպքերի մասին պատմելիս հաճախ դիմում է հումորին, դրանով ավելի աշխույժ դարձնելով իր երկը։

Դ. ՀԱՅՐԱՊԵՏՅԱՆ

**Գիր սիրե, ղալամ սիրե, դավթար սիրե։**

ՍԱՅԱԹ-ՆՈՎԱ

**Իմ մեջ եղած ամբողջ լավագույնի համար ես պարտական եմ գրքերին։ Սիրեցեք գիրքը՝ գիտելիքների աղբյուրը։**

Մ. ԳՈՐԿԻ

**Օ՜, գրքերի աշխարհը տիեզերք է անեզր։**

Ե. ՉԱՐԵՆՑ

## ԱՄԱԶՈՆԻ ՋՈՒՆԳԼԻՆԵՐՈՒՄ

Աշխարհի ամենաջրառատ գետի՝ Ամազոնի ափերին աճում են բազմապիսի ծառեր, բույսեր, թփեր։ Այդ ծառերի մի տեսակից մարդիկ ստանում են բնական կաուչուկ։ Վարձված բանվորները ծառերի բների վրա խոր կտրվածքներ են բաց անում, տակը դնում հատուկ ամաններ, որոնց մեջ լցվում է ծառի բնի մեջ եղած կաուչուկ-հեղուկը։

Հեղինակը մեծ հերոսություն է ցուցաբերել, երբ կտրել է հազարավոր կիլոմետր ճանապարհ և հասել Ամազոնի ջունգլիները, որպեսզի ուսումնասիրի տեղի բնակիչների կենցաղն ու կյանքը։ Նա տեսել է կաուչուկ որոնողների մի շարք ջոկատներ, որոնք անտանելի ծանր պայմաններում աշխատել են իրենց տերերի համար։ Բանվորներից շատերը, ինչպես նաև նրանց ընտանիքի անդամները զոհ են դարձել զանազան հիվանդությունների, թունավոր օձերի ու միջատների խայթոցներին։

Այդ վայրերում ապրող միջատները, թռչունները, սողունները, կապիկները, ամերիկյան կոկորդիլոսներն ու մյուս գազանները չափից ավելի մեծ ու կատաղի են, քան մյուս մայր ցամաքների կենդանիները։ Ամազոնի և նրա վտակներում վխտացող ձկներից շատերը նույնպես քիչ մարդկային զոհեր չեն տվել։

Հեղինակն ինքն էլ հիվանդացել է մալարիայով, հյուծվել, բայց քաջություն է ունեցել հասնել վայրի ցեղերի բնակավայրերը, մի բան, որ շատ վտանգավոր է սպիտակամորթների համար։




Նա մի քանի շաբաթ ապրել է Մանգերոմաներ կոչվող վայրի ցեղի համայնքում, որի անդամները մարդակերների համբավ ունեն։ Լենջը կարողացել է ցեղապետի սիրտը շահել, համոզել նրան, որ ինքն անվնաս մարդ է

և եկել է իրենց մոտ բարեկամական այցով: Ցեղապետը վերցրել է նրան իր հովանավորության տակ: Լենջը ականատես է եղել, թե ինչպես մի խումբ պերուցիներ հարձակվել են այդ վայրի ցեղի վրա, սակայն մարդակեր մանգերոմաներից 12 հոգի ինքնաշեն զենքերով ոչնչացրել են բոլորին: Մարդակերները սպանվածների ձեռքերն ու ոտքերը կտրել բերել են իրենց հյուղակը, լցրել կճուճների մեջ, եփել և կերել են:

Բազում փորձություններ ու դժվարություններ հաղթահարելով, Ելգոտ Լենջը վերադառնում է հայրենիք և հրատարակում իր տպավորությունների գիրքը, որը ընթերցվում է մեծ հետաքրքրությամբ:

Հ. ՇԻՐԱԶՅԱՆ




## ՄԵՆՔ 17 ՄԻԼԻՈՆ ԵՆՔ

Պիոներները նախապատրաստվում էին հերթական հավաքույթին: Ջոկատի խորհուրդը Ուիտային, Օլեգին և Սերյոժային հանձնարարել էր հավաքույթի համար պատրաստել մի ալբոմ, որը պատկերեր մեր անծայրածիր Հայրենիքի պիոներների առօրյան, նրանց խրախուսելի նախաձեռնությունները:

Անցնում էին օրերը, բայց ալբոմի թերթերը դեռ սպիտակ էին:

Եվ ահա Ուիտան ու Սերյոժան անհանգստացած եկան Օլեգի մոտ: Օլեգ Բոդրովը զարմանալի տղա է. միշտ մի բան պիտի հնարի: Եվ իզուր չէ, որ բոլորը նրան գյուտարար են ասում: Մի օր նրա խելքին փչեց իրենց կարի մեքենան դարձնել էլեկտրական շարժիչով աշխատող: Մի ուրիշ անգամ Օլեգը հին մաղացից ու երկաթի կտորներից սպիտակեղենի քամիչ սարքեց: Այդ նա էր, որ դպրոց տարավ սեփական կոնստրուկցիայով պատրաստած աստղադիտակը, և բոլոր երեխաները կարողացան տեսնել Երկրի արհեստական արբանյակի թռիչքը: Հապա «ինքնասրի՞չը»: Մի անգամ նոր դասը բացատրելուց առաջ ուսուցչուհին օրվա հերթապահին պատվիրեց մաքրել գրատախտակը: Բայց հերթապահը դեռ չէր հասցրել տեղից վեր կենալ, երբ գրատախտակի անկյունում դրված բարձիկն ինքնիրեն շարժվեց տեղից, սահեց կավիճե տառերի վրայով, մաքրեց գրատախտակը և նորից կուչ եկավ մի անկյունում: Բոլորը մի պահ զարմանքից քար կտրեցին, ապա նայեցին Օլեգի կողմը: Դե, իհարկե, դա էլ նրա արածն էր:

Ու հիմա էլ, երբ հավաքույթին հաշված օրեր էին մնացել, գյուտարարը սեղանի վրա լցրել էր երկաթի կտորներ, պտուտակներ, պնդօղակներ, աքցաններ ու զանազան այլ գործիքներ և բարոմետր հիշեցնող մի ինչ-որ սարքի վրա էր աշխատում: Դա բարձրաչափ էր:

— Բա չես ամաչո՞ւմ,— նրա մանելով գոռաց Ուիտան:— Հավաքույթը քթներիս տակ է, իսկ դու ընկել ես քո էդ պտուտակների-մտուտակների հետևից:

Սերյոժան նույնպես բարկացավ ընկերոջ վրա, թեև կես ժամ առաջ Ուիտան նույն ամոթանքը տալիս էր նրան, որը ամեն ինչ մոռացած՝ բակում գնդակ էր խաղում:

— Գնա՛նք,— վճռական ասաց Օլեգը:— Հիմա ես ձեզ մի անսպասելի բան ցույց կտամ, ու...

Տան անկյունում գտնվում էր նրանց մարագը: Օլեգը բաց արեց դուռը. մարագում ուղղաթիռ կար, իսկական ուղղաթիռ:

Եվ սկսեց նրանց անչափ հետաքրքիր ու կախարդական ճանապարհորդությունը: Ուիտան, Օլեգը և Սերյոժան հյուր եղան Սովետական Միության բոլոր 15 ռեսպուբլիկաներում, ծանոթացան գրողների, գիտնականների, պիոներների հետ և շատ ու շատ բաներ տեսան: Նրանք իրենց հետ այնքան հարստություններ տարան Մոսկվա, որ դրանցից ոչ թե ալբոմ, այլ մի ամբողջ գիրք ստացվեց: Այդ գիրքը կոչվում է «Մենք 17000000 ենք», որը ռուսերեն լույս է ընծայվել վերջերս «Մոլոդայա գվարդիայի» հրատարակչությամբ:

Վերնագիրն արդեն ցույց է տալիս, որ մեր երկրում կա 17 միլիոն պիոներ: Եթե հնարավոր լիներ բոլորին շարք կանգնեցնել, ապա մի ծայրը կլիներ Լենինգրադում, իսկ մյուսը՝ Վլադիվոստոկում:

Ահա այդ մեծ բանակի հետաքրքրական գործերի մասին է պատմում այս գիրքը: Այնտեղ կան նաև գեղեցիկ պատմվածքներ ու բանաստեղծություններ:

Ինչպես ամեն մի ռեսպուբլիկա, Հայաստանն էլ ունի իր առանձին բաժինը:

Պատանի ընթերցող, եթե ուզում ես իմանալ, թե ինչ տեսան մեր ճանապարհորդները, կարդա «Մենք 17000000 ենք» գիրքը: Գրախանութներում թե չլինի, դիմիր ձեր դպրոցի գրադարանավարին:

Կարդա՛, այ իմ խելոք մանուկ,
Կարդա՛, գրի՛ր տարին բոլոր,
Կարդացողի խելքն է կտրուկ,
Միտքը պայծառ ու լուսավոր:
Գիրք կարդալով՝ դու գրքերում
Շատ նորանոր բան կիմանաս,
Շատ շատերից շատ բաներում
Մտքով հեռու կսլանաս...

ԱԼ. ԾԱՏՈՒՐՅԱՆ

## ԴԱՐՉՆԱԳՈՒՅՆ ՄԱՐԴԻԿ

Հնդկական օվկիանոսի կատաղի ալիքները անդադար գլորվելով արշավում են դարչնագույն աշխարհամասի վրա: Անհիշելի ժամանակներից այդ աշխարհամասը բարձրացել է օվկիանոսում, իբրև դարերի անեղծված, անկրկնելի մի հեքիաթ: Արևմուտքից և հարավից շառաչում են Հնդկական օվկիանոսի ջրերը, արևելքից Խաղաղ օվկիանոսը խառնում է իր ջրերը Կորալյան ծովի ջրերին և ողողում նրա ափերը, իսկ Հյուսիսից՝ Թիմորյան և Արաֆուրյան ծովերը:

Երևի դուք արդեն կռահեցիք, որ խոսքը Ավստրալիայի մասին է: Այո: Այս գիրքը այդ մասին է պատմում:




Ավստրալիայի հյուսիս-արևմըտյան ու կենտրոնական մասն ամայի է: Դարչնագույն մարդիկ են ապրում այնտեղ, վեհապանծ լեռների ստորոտում փռված կարմիր ավազների մեջ: Կոնոր լեռը իրենից ներկայացնում է կվարցիտի մի վիթխարի զանգված և ունի տափակ գագաթ: Թեք ու զառիվեր լեռը շրջապատված է միմյանց վրա կուտակված ուղղաձիգ ժայռերով: Ուղղակի ավազե անապատից բարձրանում է Էյրս լեռան հանելուկային զանգվածը, իսկ քառասուն մղոն նրանից այն կողմը Օլգի լեռն է (Կատաջուտան), որը հիշեցնում է նախնադարյան աշխարհի մասին: Թվում է, թե վերադարձել ես հին-հին դարերը, երբ բարձր գագաթների վրա ճախրում էին լայնաթև պտերոդակտիլները, իսկ լեռների ստորոտում թափառում էին վիթխարի դինոզավրերը:

Այստեղ ապրում են ազնիվ մարդիկ, որոնք ընդունակ են զոհվել ընկերոջ և հայրենիքի համար: Հեղինակը պատմում է, որ մի անգամ ոստիկանները հետապնդում էին մի քանի աբորիգենների: Վերջապես ջրափոսի ավազոտ ափին նրանք նկատում են փախստականներից մեկի հետքը: Շուտով ոստիկանները հասնում են ժայռի կատարին կանգնած փախըստականին: Նրանք կրակում և վիրավորում են դժբախտ աբորիգենին: Անզեն ու վիրավորված փախստականը փորձում է թաքնըվել ժայռի տակ եղած ծերպում, բայց ոստիկանի գնդակը սպանում է նրան:

Նա զոհվեց ընկերներին փրկելու համար:

Կոնոր լեռը Սաույե մարդկանց բնակատեղին է եղել: Այդ հնագույն արարածներն իրենց արտաքինով աբորիգեններից տարբերվում են միայն այն բանով, որ նրանց մարմինը ծածկված է եղյամով, իսկ մորուքն ու հոնքերը իրենցից ներկայացնում են սառը և ղողանջող սառցե լուլաներ:

Այս գրքում դուք կկարդաք Ավստրալիայի կենտրոնում ապրող աբորիգենների կյանքի մասին շատ տարօրինակ, անհավանական, անհավատալի մանրամասնություններ: Զարմանալի է, որ աշխարհում դեռ ապրում են այնպիսի մարդիկ, որոնց մասին հեղինակն ասում է. «Սակայն նա առաջվա նման պնդում է, որ երեկ երեկոյան այստեղ պարզ տեսավ չորս կաթիլ արյուն: Աբորիգենները միայն մինչև չորս են հաշվում»:

Դժվար է պատկերացնել, որ մեր ժամանակներում, ատոմային այս դարում, կարմիր ավազներում դեռ շրջում են մերկ մարդիկ, որոնք միայն մինչև չորս են կարողանում հաշվել:

Վ. ԱՐԱՄՅԱՆ

### ԳՐԱԴԱՐԱՆՍ

*Բազմած են շուրջս նրանք ամեն օր՝*
*Բոլոր հանճարեղ մեծերն աշխարհքի.*
*Երգում են, պատմում ներդաշնակ ու խոր*
*Միտքն ու գաղտնիքը մահի ու կյանքի...*

ՀՈՎՀ. ԹՈՒՄԱՆՅԱՆ

**Իսկ այս գրքերը կարդացե՞լ եք**






# ԹԱՏՐՈՆ ԲԱՐԵԿԱՄ ՄԱՆԿԱՆՑ

Ա° ՏԱՐԻ — 1 ՕԳՈՍՏՈՍ 1876 — ԹԻՒ 15



Հայերեն առաջին մանկական պարբերականը լույս է տեսել 86 տարի առաջ, 1876 թվականի հունվարին, Կ. Պոլսում՝ «Թատրոն բարեկամ մանկանց» վերնագրով: Հայ մանուկների սիրելի այդ առաջին երկշաբաթաթերթը հրատարակել է հայ հանճարեղ երկիծաբան Հակոբ Պարոնյանը:

Այն ժամանակներում մանկական գրքեր չկային, և Պարոնյանը նպատակ էր դնում իր թերթի միջոցով ստեղծել մանկական հետաքրքիր գրվածքներ ու դրանցով դաստիարակել հայ երեխաներին: Նա մարդու առաջին պարտականությունը համարում էր հայրենասիրությունը, ուստի իր փոքրիկ ընթերցողներին ներշնչում էր հայրենասիրական վեհ գաղափարներ:

«... Որ ազգեն ալ որ ըլլաս,— գրում է նա 25-րդ համարում,— ինչ վիճակի մեջ ալ որ գտնվիս, դու պահապան զինվոր մըն ես հայրենիքիդ: Նա ալ իրավունք ունի քո գիտությանդ, առաքինությանդ, զգացմանդ և բոլոր գործերուդ արդյունքը վայելելու: Մի՛ հարցուներ, թե ինչ է քու պարտքդ հայրենիքիդ. սիրե ու կը սիրվիս:... զինվո՞ր ես, հայրենիքիդ ծառայել մտածե, արհեստավո՞ր, ճարտարությունդ բանեցուր հայրենիքիդ զարգացման համար, գիտո՞ւն, հայրենիքիդ օգուտը խորհե և ուրիշին սորվեցուր»:

Թերթում պարբերաբար տպագրվում էին «պարզ ոճով շարադրված բարոյական պատմություններ, միտք բացող հրահանգներ, զանազան գիտությանց վերաբերյալ նախնական ծանոթություններ, առակներ, խաղեր, հանելուկներ»:

«Թատրոն բարեկամ մանկանց»—ում տպագրված պատմըվածքները մանուկների համար նախատեսված առաջին երկերն էին մեր գրականության մեջ:

Հաջորդ տասնամյակում արդեն իրար հետևից սկսում են հրատարակվել Նշան Պերպերյանի «Բուրաստան մանկանց» (Կ. Պոլիս), Տիգրան Նազարյանի «Աղբյուր» (Թբիլիսի) մանկական հանդեսները: Սակայն, ինչպես այժմ պարզվում է, Խաչատուր Աբովյանից հետո մանկական գրականության զարգացման ուղղությամբ առաջին լուրջ քայլերը կատարել է մեծ երգիծաբանի երկշաբաթաթերթը:

Մանուկների համար գրված երկերով սովորեցնում էին լինել ազնիվ, աշխատասեր, շիտակ, ճշմարտախոս, խոհեմ, համարձակ, տոկուն, հարգել ծնողներին ու մեծերին, օգնել փոքրերին ու թույլերին:

Խաղը, զվարճությունն ու զբոսանքը անհրաժեշտ են մանկան համար, սակայն այդ բոլորը չպետք է խանգարեն դասերին: Հանձնարարելով զանազան հանելուկներ, խաղեր, Պարոնյանը միևնույն ժամանակ զգուշացնում էր իր ընթերցողներին՝ դրանցով զբաղվել դասերը պատրաստելուց հետո:

Բայց նա թերթը հրատարակում էր մեծ զոհողությունների գնով: 48 համար լույս ընծայելուց հետո, 1878 թվականի հունիսին մեծ գրողը ստիպված է լինում դադարեցնել երկշաբաթաթերթի հրատարակությունը:

Գ. ՄԱԴՈՅԱՆ



# Գող Մատնող Աքաղաղը

(Պատմվածք «Թատրոն բարեկամ մանկանց» երկշաբաթաթերթից):

Դպրոցի մը մէջ օրին մէկը գիրք մը կոր-սուելով՝ գողցված ըլլալը կհասկցվի: Վարժապետը շատ կաշխատի գողցողը գտնելու համար, բոլոր աշակերտները կը հարցուփորձէ, բայց ամէնքն ալ կուրանան: Տղայոց մէջ որոնց վրա որ կասկած կար, թէ գիտեն բանին էութիւնը, վարժապետը զանոնք մէկիկ-մէկիկ կը կանչէ, կը հորդորէ, կը խրատէ, կսպառնա, բայց դարձյալ չկրնար գործն ստուգել: Ինչ ընէ, ինչ չընէ, վարպետ հնարք մը կմտածէ գողը երևան հանելու համար:

Տնտեսը կը ելլէ ու աքաղաղներ բերել կուտա, և այն տղայոց ամէն մէկուն ձեռքը մէկ-մէկ աքաղաղ տալէն ետքը, աչվնին ալ թաշկինակով կկապէ:

— Հիմա, — կըսէ վարժապետը հրաման ընելով, — ամէնքդ ալ ձեռվնիդ աքաղաղին վրա պիտի քսէք. որուն ձեռքի աքաղաղը որ խօսի, այն տղան է գիրքին գողը. աքաղաղը սուտ չըրուցեր ամէնեկին:

Տղայք հնազանդելով, ամէն մէկը կը քսէ ձեռքն իր աքաղաղին վրա, բայց աքաղաղներէն և ոչ մէկը կը խօսի: Այն ատեն վարժապետը, ես հիմա կհասկնամ ըսելով՝ մէկիկ-մէկիկ քովը կկանչէ տղայքը, և անոնց ափը բանալով մէջը կնայի բաղդ նայողի պէս: Վարժապետն ամէնուն ափը քննելէն ետքը կը ճանչնա գողը, որ կասկարմիր կտրեր էր, և անոր թևէն բռնած կը տանի քովի սենյակը և զաղտուկ ասանկ կըսէ. — Չա՛ր տղա, ինչպէ՞ս համարձակեցար այդ մեղքը գործելէն ետքը մինչև վերջն ուրանալու. ահա այս անգամ՝ աքաղաղը չխօսեցավ, և ականջս ի վար մատնեց գողը՝ մեղքնալով քեզ, որ ընկերներուդ առջև խայտառակ չըլլաս, բայց գիտցիր, որ ուրիշ անգամ չէ թէ մինակ աքաղաղը, հապա քարն անգամ պիտի խօսի, երբոր ասանկ մեղք մը գործես ու մեղա չըսես:

Այս պատմութիւնը կարդացող տղայք հիմա պիտի զարմանան, թէ ի՞նչպէս վարժապետը կրցեր էր գողը ճանչնալ: Գիտե՞ք ինչ ըրեր էր. ահա գրուցեմ: Աքաղաղներուն վրա զաղտուկ մը սև մուր քսել տված էր առաջուց. ինտոր որ «գող սիրտը դող» կըսեն, հանցավոր տղա՛ն վախցեր էր ձեռքն աքաղաղին վրա քսելու, որ չըլնէ իրավցնէ խօսի ու զինքը մատնէ, և ասանկով մինակ իր ձեռքը մրոտած չէր, քանի որ մյուս բոլոր տղայոց ձեռքերն ալ սեպ սև եղեր էին:



# Փոքրիկների մեծ գործերը



Շաքիի միջնակարգ դպրոց...

Հենց մուտքի մոտ յոթերորդ դասարանն է։ Ներս ենք մտնում և հազիվ զսպում մեր հիացմունքը։ Չորս կարի մեքենայի վրա մանկական հագուստներ են կարում աշակերտուհիները։

— Մեր աշակերտուհիները ավարտում են դըպրոցը՝ կար ու ձևին, նուրբ ասեղնագործությանը, ժանյակագործությանը լավ տիրապետած,— ասում է դպրոցի դիրեկտոր, բազմավաստակ մանկավարժ Վազգեն Գրիգորյանը։

— Իսկ ի՞նչ միջոցներով եք գնել այդ մեքենաները,— հարցնում ենք դիրեկտորին։

— Դպրոցի ուսումնափորձնական հողամասի եկամուտներից։ Տասը հազար ռուբլու միայն մըրգեր, բանջարեղեն ենք վաճառել։ Կոլտնտեսությանը ութ տոննա ճակնդեղ ենք տվել որպես անասնակեր։ Իսկ գիտե՞ք, ութ տոննան քանի ճակնդեղ է եղել. հազիվ հազար հատ։ 12 կիլոգրամանոց ճակնդեղներից մի քանիսը դեռ պահում ենք, տեսե՛ք։

Արհեստանոցներում, լաբորատորիաներում, կաբինետներում շատ հաստոցներ, սարքեր, մեքենաներ ու գործիքներ կան։ Դպրոցն ունի նաև դաշնամուր, ավտոմեքենա, տրակտոր, կոմբայն, շարքացան։ Այս ամենը ձեռք են բերվել դպրոցի միջոցներով։ Ահա երեք տարի է, ինչ դպրոցը վերանորոգում են աշակերտները, իսկ դրան հատկացված միջոցներն այլ նպատակների համար են ծախսվում։ Դեռ ավելին, այդ միջոցներով դպրոցը կառուցել է երկու լրացուցիչ դասարան, պիոներական սենյակ, ճաշարանոց։ Ճաշարի միս վայելել են գրեթե բոլոր կոլտնտեսականները, որովհետև գյուղի խանութում հաճախ դպրոցականների աճեցրած ճագարների միսն է վաճառվում։

Ուսումնափորձնական հողամաս... Հիսուն տեսակ ծառեր ու թփեր են մշակում աշակերտները։ Գյուղում առաջինը դպրոցը տնկեց խնձորենիներ, տանձենիներ ու կեռասենիներ։ Կերի կաղամբի, ծաղկակաղամբի, կապույտ ու կարմիր կաղամբի, պատյանավորված, պոմիդորանման բադրիջանի և մի շարք այլ բանջարեղենների, ազնվամորու, մանանեխի մշակությունը այստեղ սկսվեց և լայն տարածում ստացավ ողջ Սիսիանի շրջանում։ Ասես փորձադաշտ է սա, որտեղից ազնիվ տեսակներ են տարածվում ամենուրեք։

Անցնում ենք լաբորատորիաները։ Պատերի երկարությամբ գեղեցիկ պահարաններ են տեղադըրված, որոնց մեջ սարքեր կան, սրվակներում՝ քիմիական նյութեր։ Պարզվում է, որ այդ պահարանները ևս աշակերտներն են պատրաստել, միայն դրանց ապակիներն են գնված։

Երբ հեռանում էինք դպրոցից, կոլտնտեսության նախագահ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Արմենակ Խաչատրյանն ասաց.

— Կոլտնտեսության բոլոր բրիգադիրները, օղակավարները, ֆերմայի վարիչները, մեխանիզատորները և մյուս լավագույն կադրերը նախկին պիոներներն են, դպրոցի վերջին տարիների շըրջանավարտները։ Մեր դպրոցը լեռնաշխարհում ընկած այս գյուղի կադրերի դարբնոցն է։ Իսկ այսօրվա աշակերտները մեր կոլտնտեսականների լավագույն օգնականներն են։ Անցած տարի մեր կոլտնտեսությունը վաթսուն հեկտար ծխախոտից բարձր բերք ստացավ՝ հեկտարից քսան ցենտներ։ Ծխախոտը հին դրամով մոտ երկու միլիոն ռուբլու եկամուտ տվեց կոլտնտեսությանը։ Այդ գումարի մեծ մասը ձեռք է բերվել դպրոցականների քըրտինքով, որովհետև նրանք են մշակել պլանտացիաների մեծ մասը և բարձր բերք աճեցրել։

Շա՜տ, շա՜տ ենք գոհ դպրոցից։

ԳԱԲՐԻԵԼ ԱՐԵՎՅԱՆ





Նկ. ՀՐԱՅՐ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ





# Մոլէլեկտրոնիկի ԳԱՂՏՆԻՔԸ

Պայծառ առավոտ էր: Երևանի, օդանավակայանում մեծ բազմություն էր հավաքվել. շատերը ծաղկեփնջեր ունեին ձեռքներին, ոմանք ուրախ զրուցում էին: Վերջապես «ԻԼ—18» հսկա ինքնաթիռը կատարեց իր վերջին շրջապտույտը: Սուրիկը, Վաչիկը և Անահիտը եկել էին դիմավորելու իրենց ընկերոջը՝ Արամին, որը Մոսկվա էր մեկնել մասնակցելու միութենական ռադիոցուցահանդեսի աշխատանքներին: Շատ ջերմ ու սրտառուչ էր երեխաների հանդիպումը: Հանկարծ այդ միջոցին, շատ մոտիկից լսվեց հաճելի երաժշտություն: «Վա՛, այս որտեղի՞ց է»— զարմացած իրենց շուրջը նայեցին երեխաները, իսկ Արամը այնպես ձևացրեց, իբր ոչինչից տեղեկություն չունի:

— Դե լավ, Արամ, — դիմեց նրան Անահիտը,— սա անպատճառ քո հերթական խաղն է, չէ՛:

Արամը գրպանից հանեց փոքրիկ մի ռադիոընդունիչ:

... Հաջորդ օրը, ըստ պայմանավորվածության, երեխաները հավաքվեցին Հրազդանի ցեղատեսիլ ձորում և տեղավորվեցին ստվերախիտ մի կաղնու տակ: Արամը բացեց իր ճամպրուկը և ժպտադեմ դիմեց ընկերներին.

— Դուք այստեղ շատ հետաքրքիր բաներ կտեսնեք, ահա, Անահիտ, այս տիկնիկը քեզ եմ նվիրում:

Եվ, ո՜վ զարմանք, տիկնիկը սկսեց հեքիաթներ պատմել:

— Վա՜, սա ի՞նչ հրաշք է.—Արամին դիմեց Անահիտը:

— Գիտության դարում հրաշքներ չկան, այս տիկնիկի մեջ տեղավորված է փոքր չափերի մագնիտոֆոն, ուր նախօրոք գրառված են այդ հեքիաթները, ահա և բոլորը:

— Իսկ սա ի՞նչ բան է, հարցրեց Սուրիկը:

— Ռադիոֆոն է, առանց լարի հեռախոս, ընդամենը 500 գրամ քաշ ունի, շատ հարմար է շրջագայության ժամանակ: Ա՛յ, հիմա մենք այստեղ ենք, բայց մեզ կարող են գտնել հեռախոսով: Անհրաժեշտության դեպքում կարող ենք և մենք զանգահարել ցանկացած վայրը, նույնիսկ տրամվայից, տրոլեյբուսից, ավտոբուսից: Ուզու՞մ եք փորձենք:

Արամը հավաքեց ինչ-որ համար, և լսափողում լսվեց խոսակցի ձայնը:

— Արամ, այդ ու՞մ հետ ես խոսում, զարմացած հարցրեց Սուրիկը:

— Ես խոսում եմ ռադիոակումբի հետ, ուզու՞մ ես ինքդ էլ խոսիր:

— Ավելի լավ է դու մեզ պատմիր ցուցահանդեսի աշխատանքների մասին,— դիմեց նրան Վաչիկը:

— Շատ հարուստ էր ցուցահանդեսը,—սկսեց պատմել Արամը.—Սովետական միությունից և արտասահմանից այդտեղ էին հավաքվել մոտ 300 ռադիոսիրող, նրանք ցուցադրել էին ավելի քան 60 նոր տեսակի գրպանի ռադիոընդունիչներ՝ «Մոսկվա», «Արբանյակ», «Պիոներ», «Կոմետա», այնուհետև գրպանի մագնիտոֆոններ, ռադիոհաղորդման և ընդունման փոքրածավալ կայաններ, ինքնաշարժ ռադիոհարմարանքներ և այլն: Լավագույն նմուշները, իհարկե, արժանացան մրցանակների, տրվեցին վկայագրեր: Իսկ դուք գիտե՞ք, թե ինչի շնորհիվ հնարավոր եղավ այդքան փոքրածավալ դարձնել ռադիոընդունիչները: Ռադիոտեխնիկայում, երբ հանդես եկան կիսահաղորդիչները, դուրս մղվեցին նույնիսկ ամենափոքր ռադիոլամպերը, որով զգալի չափով փոքրացվեցին ընդունիչի չափերը և քաշը: Հանդես եկան, այսպես կոչված, «Ներքափոքր» ընդունիչներ: Ա՛յ, նայեք, այս փոքրիկ ռադիոընդունիչում որքան լարեր ու ռադիոմասեր կան, անշուշտ սրանց միացումները մեծ դժվարություն են առաջացնում: Այնուհետև մշակվեց հավաքման նոր մեթոդ: Ռադիոապարատը ամբողջ մասերով դրոշմվում է մեկուսիչ ժապավենի վրա, համարյա տպագրման եղանակով: Այստեղ չես տեսնի միացման ոչ մի հաղորդալար:

Կիսահաղորդիչները և տպագրման մեթոդը հնարավորություն տվին շաքարի կտորի մեծության հասցնել ռադիոընդունիչի չափերը: Վերջերս հանդես եկավ մոլեկուլյար էլեկտրոնիկան, կրճատ՝ մոլէկտրոնիկան: Այստեղ օգտագործվում են բյուրեղների հատկությունները: Հատուկ մշակման ենթարկվելուց հետո բյուրեղները կարող են հանդես գալ որպես հաղորդիչներ, մեկուսիչներ կամ կիսահաղորդիչներ: Բյուրեղը նմանվում է բարդ







ռադիոէլեկտրոնային կառուցվածքի, օրինակ՝ ուժեղարարի, գեներատորի: Ռադիոընդունիչի բոլոր մասերը կազմված են բյուրեղի միկրոսկոպիկ բջիջներից: Իսկ այդպիսի ընդունիչը սիսեռի հատիկից մեծ չի լինի: Ցուցահանդեսում ես ծանոթացա մի ռադիոսիրողի հետ, որը զարմանալի ակնոց ուներ. շրջանակի վրա հավաքված էր միկրոսկոպիկ ռադիոընդունիչ, որը սնվում էր արեգակնային փոքրածավալ մարտկոցով: Ակնոցի ոտնակը ծառայում էր որպես լսափող:

Արամը ոգևորված պատմում էր, իսկ ընկերները զմայլված լսում էին, ու ոչ ոք չէր նկատում, որ իրիկնային ստվերները կամաց-կամաց ձորն էին իջնում:

*ՀԱԿՈԲ ՁԱՓԱՐԻՃՅԱՆ*



# ՔԻՄԻԱՆ և „ՀՐԱՇՔՆԵՐԸ“

Դուք երևի ծանոթ եք քիմիական մի շարք երևույթների, որոնք արտաքուստ շատ զարմանալի են, և անգետ մարդը կարող է դրանք հրաշք համարել:

Մարդկանց հավատը «սուրբ հոգու» նկատմամբ ավելի ամրապնդելու համար կրոնականները հաճախ ստեղծում էին այսպիսի հրաշք թվացող երևույթներ:

Սպիտակ ֆոսֆորը լուծելով ծծմբածխածնի լուծույթի մեջ, նրանք այդ լուծույթով որևէ մեկի բնակարանի պատին գաղտնի նկարում էին մի սրբապատկեր: Նկարը ցերեկը բոլորովին չէր երևում, իսկ երբ մութն ընկնում էր, պարզ գծագրվում էին «սրբի» դիմագծերը: Միամիտ և սնոտիապաշտ մարդը գիշերվա մթության մեջ իր տան պատի վրա տեսնելով այդ մարդկային կերպարանքը, իսկույն երկյուղածությամբ ծունկ էր չոքում, աղոթում, այն համոզմամբ, որ դա «սուրբ հոգի» է կամ «հրեշտակ»: Սակայն իրականում դա կապված է ֆոսֆորի առկայության հետ, որն ընդունակ է ցածր ջերմաստիճանում բռնկվել և մթության մեջ լույս արձակել: Գերեզմաններում, ճահիճներում, ծառերի բներում, կենդանիների դիակների վրա երբեմն գիշեր ժամանակ երևացող լույսերը նույնպես ֆոսֆորի այրման արդյունք են, որոնց կրոնականները տալիս են տարբեր տեսակի ֆանտաստիկ բացատրություններ:

1953 թվականին Լեհաստանում կաթոլիկ հոգևորականները կազմակերպեցին այսպիսի մի «հրաշք»: եկեղեցում գտնվող հավատացյալները հանկարծ նկատեցին, որ մայր աստվածածնի սրբապատկերը արտասվում է, այն էլ ոչ թե սովորական, այլ արյան արտասուքներով: Եկեղեցականները կեղծ հառաչանքներով իսկույն սկսեցին աղոթք անել, ծունկ չոքել և ժողովրդին հավատացնել, որ մայր աստվածածինը լաց է լինում եկեղեցու թշվառ դրությունը տեսնելով: Նրանց նպատակն էր նոր եկամուտ կորզել եկեղեցու համար: Պարզվեց, որ եկեղեցականները վերցրել են ամոնիումի ռոդանատի ու երկաթի քլորիդի ջրային լուծույթները խառնել իրար և ստացել արյան գույնի մի հեղուկ: Այդ հեղուկը լցնելով մի անոթի մեջ՝ տեղավորել են սրբապատկերի հետևում, որտեղ այն կաթիլ-կաթիլ հոսել է:

Եկեղեցականները դարեր շարունակ միամիտ մարդկանց հավատացրել են, որ կան «անտեսանելի ոգիներ», «ամենակարող ուժեր», որոնք կես գիշերին երբեմն հայտնվում են ու վառում եկեղեցու մոմերը: Այս հրաշքին ականատես են եղել նույնիսկ շատերը:

Որպեսզի այս «հրաշքը» հասկանալի դառնա, կատարեցեք այսպիսի մի փորձ: Մոմի պատրույգի մոտ մի քիչ փորեք և այնտեղ լցրեք փոշիացած կալիումպերմանգանատ: Դրանից հետո պատրույգի վրա կաթեցրեք մեկ-երկու կաթիլ գլիցերին. շատ չանցած պատրույգը բռնկվում է: Դա բացատրվում է նրանով, որ կալիումպերմանգանատի և գլիցերինի փոխներգործության հետևանքով անջատվում

է ատոմական թթվածին և առաջացած ջերմության շնորհիվ բռնկվում է գլիցերինը, որից և պատրույգը: Նույնը կստացվի, եթե մենք օգտագործենք քրոմական անհիդրիդը կամ ծծմբածխածնում լուծված սպիտակ ֆոսֆորը:

Նման սկզբունքով է հորինված նաև «կախարդական գավազանի հրաշքը», որից օգտվելով տերտերները վառում են եկեղեցիների ջահերը, զարմանք պատճառելով հավատացյալներին: Ըստ նրանց, այդ գավազանները օժտված են կախարդական զորությամբ: Երբ գավազանները մոտեցնում են ջահերին, իբր աստծո հրամանով վերջիններս վառվում են: Այսպիսի գավազանների կախարդական բնույթը նույնպես հերքվում է քիմիական փորձերով:

Եթե վերցնենք մի քիչ լավ մանրացված կալիումպերմանգանատ, նրան ավելացնենք 2–3 կաթիլ խիտ ծծմբական թթու և այդ խառնուրդում թաթախված ձողը մոտեցնենք սպիրտայրոցին, տեղի կունենա բոցավառում, կալիումպերմանգանատի և ծծմբական թթվի փոխներգործությունից ստացված ատոմական թթվածինը բռնկում է դյուրավառ սպիրտը: Ֆոսֆորով և մի շարք նման այլ օքսիդիչների փոխներգործությամբ են առաջանում նաև ածխային հանքերի ստորերկրյա հրդեհները:

Գուցե դուք կուզենայիք նաև իմանալ, թե ինչպե՞ս են գրում գաղտնի նամակներ: Հախճապակյա թասիկի մեջ լցրեք մի քիչ կալիումի նիտրատ, վրան ավելացրեք ջուր և տաքացրեք սպիրտայրոցի վրա այնքան, մինչև որ աղը լավ լուծվի ու ստացվի թափանցիկ լուծույթ: Այնուհետև այդ լուծույթը թողեք, որ սառչի: Ապա այդ լուծույթում թաթախած գրիչով գրեք մաքուր թղթի վրա: Այնտեղ ոչինչ չի երևա: Բայց եթե թուղթը պահեք սպիրտայրոցի կամ վառարանի վրա, իսկույն կերևան սև գույնի տառերը:

Սակայն, նույնիսկ այդպիսի պարզ քիմիական երևույթին, որ տեղի է ունենում ատոմական թթվածնի օքսիդիչ հատկության շնորհիվ, կրոնականները տալիս են հրաշքային բացատրություն:

Երեխանե՛ր, ես ցանկանում եմ ձեզ պատմել նաև մի փոքրիկ պատմություն, որը տարիներ առաջ լսել եմ մի գյուղացուց՝ Մելիք ամուց:

— Մեր հարևան գյուղում,— պատմում էր Մելիք ամին,— Մարիամ անունով մի կին էր ապրում, որն ինձ փրկեց մահից: Մի անգամ ես շատ ուժեղ հիվանդացա, աղիքներս կարծես թե այրվում էին: Ձայնս գլուխս եմ գցել, լալիս եմ, գոռում ցավից: Հարևաններս խորհուրդ տվեցին՝ Մարիամի մոտ գնալ: Մարիամն ինձ պառկեցրեց և, ականջը դնելով փորիս, սկսեց լսել: «Կրա՛կ կա փորիդ մեջ,— գլուխը բարձրացնելով՝ ասաց նա,— և դու կայրվես,

•



Նկ. ԺԵՆՅԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ

մոխիր կդառնաս, եթե կրակը դուրս չհանվի փորիցդ»: Կինս այս լսելով, սկսեց լաց լինել: Ես էլ գլուխս կորցրած, ասում եմ կնոջս. «Ա՛յ կնիկ, աստծու խաթեր, ինչ-որ կուզի՝ տու՛ր, միայն թե փրկի ինձ»: Այս ասելիս, տեսնեմ, Մարիամն ուրախացավ: Իսկույն մի աման դրեց փորիս վրա և մեջը ջուր լցրեց ու սկսեց աղոթքներ շշնջալ և հետո ինչ-որ բան գցեց ջրի մեջ: Երկնային աստվածը վկա, իմ աչքով տեսա, թե ինչպես ամանի ջուրը սկսեց այրվել... Կրակը փորիցս ելավ, և ցավն էլ կամաց-կամաց թուլացավ:

Գյուղի երեխաներից մեկը լսելով այս պատմությունը, այն պատմեց իր ուսուցչին: Հաջորդ օրը ուսուցիչը կանչեց Մելիք ամուն և նրա գյուղացի ընկերներին ու նրանց ներկայությամբ կատարեց հետևյալ փորձը: Նա մի ամանի մեջ ջուր լցրեց և մեջը, ցորենի հատիկի մեծությամբ, մետաղական նատրիում գցեց: Ջրի վրա նորից բոց առաջացավ և սկսեց այրվել: Մելիք ամին զարմացավ, և նոր միայն գլխի ընկավ, որ Մարիամի արածը «հրաշք» չէր, այլ հենց այսպիսի մի բան: Ուսուցիչը Մելիք ամուն բացատրեց, որ փորի ցավը կապված է եղել կույր աղիքի բորբոքման հետ, որը հանկարծակի սկսվել էր ու անհետացել:

Վերոհիշյալ «հրաշքները» ամենապարզ քիմիական երևույթներն են:

ՎԼԱԴԻՄԻՐ ԴԱՐԲԻՆՅԱՆ





# ՓՈՔՐԻԿ ԳԻՇԱՏԻՉՆԵՐ

Արևադարձային երկրներում ապրող արտաքնապես անվնաս չղջիկը արյունածուծ չղջիկից էլ սարսափելի է: Բայց նա սնվում է մրգեղենով, իսկ արյունածուծ չղջիկը՝ միայն կենդանի էակների արյամբ: Վերջինս ուրիշ տեսակի սնունդ չի ճանաչում:

Արյունածուծ չղջիկը ամենից հաճախ հարձակվում է քնած կենդանիների՝ շների, խոզերի, ձիերի, խոշոր ու մանր եղջերավոր անասունների վրա: Առջևի սուր կտրիչներով նա կծում, ծակում է կենդանու մաշկը: Խայթոցի հետքն ունի կոնքանման, ոչ խոր, ձագարի ձև: խայթոցը համարյա թե ցավ չի պատճառում: Սա հնարավորություն է տալիս արյունածուծ չղջիկին հանգիստ կերպով հագենալ քնած զոհի արյամբ:

Այն մարդիկ, որոնք ջունգլիներում գիշերում են հակամոծակային ցանցի տակ, իրենց կարող են զգալ անվտանգ: Ցանցը լավ պաշտպանում է ոչ միայն միջատներից, այլև արյունածուծ չղջիկներից: Պաշտպանական անհրաժեշտ միջոցներ չունեցող հնդիկները հաճախ դառնում են այդ չղջիկների զոհը: Ամենից հաճախ նրանք ամուր կպչում են կզակին, ձեռքերին կամ ոտքերին: Քնած մարդու ամենախոցելի տեղը՝ ոտքերի մատների վրայի փոքրիկ բարձիկներն են: Արյունածուծ չղջիկը կտրում է բարձիկի ծայրը և լիզում վերքից հոսող տաք արյունը:

Հակառակ իրենց անվանը, արյունածուծ չղջիկներն արյունը ոչ թե ծծում, այլ լիզում են: Նրանց առջևի ներքնատամները շատ փոքր են, դրա համար էլ լեզուն ազատորեն սպրդում է ժանիքների միջից, մինչև անգամ երբ արյունածուծ չղջիկը սեղմում է ծնոտները:

Արյունածուծ չղջիկը հագենում է լեզուն անընդհատ շարժելով: Այս չղջիկի թքի մեջ կա մի նյութ, որը չի թողնում արյունը մակարդվի: Միաժամանակ այս նյութն ունի անզգայացնող հատկություն:

Պատահում է այնպես, որ արյամբ գերհագենալով, նրանք չեն կարողանում նույնիսկ թռչել: Զոհի վրա երամներով հարձակված արյունածուծ չղջիկները երբեմն հերթականորեն կըպչում են միևնույն վերքին: Այս դեպքում ընդամենը մի վերք ունեցող կենդանին լինում է չափազանց հյուծված: Հայտնի են դեպքեր, երբ արյունածուծ չղջիկի խայթոցներից առաջացած արյան կորստից զոհվել են շներ ու հորթեր:

Մեկ արյունածուծ չղջիկը կարող է խմել 150-ից մինչև 300 գրամ արյուն:

Այս արտասովոր խմբի գիշատիչներից հետաքրքիր է մի ներկայացուցիչ ևս՝ հինգ մատանի, սուլող մեծ գորտը: Արտաքնապես նա բավականին անվնաս է թվում, բայց արժի նայել, թե ինչպես է նա կերպարանափոխվում որս տեսնելիս: Գիշատիչն անմիջապես հարձակվում է նրա վրա և աշխատում կուլ տալ, բոլորովին էլ չշփոթվելով այն բանից, որ զոհը բավականին մեծ է իրենից:

Սուլողի կերակրացուցակում միօրինակ ուտելիքներ են՝ մըկներ, թռչուններ, մողեսներ, չըղջիկներ: Պատահում է, որ կուլ է տալիս նաև... օձեր:

Ականատեսներից մեկը պատմում է, որ այդպիսի մի գորտ, որը լաբորատորիայում ապրեց յոթ տարի, մի անգամ կերավ 1.5 մետր երկարությամբ օձ: Այդ գորտը առաջ էլ օձեր էր ուտում, բայց մի անգամ ուզեցին ստուգել, թե կհամարձակվի՞ հարձակվել մեծ օձի վրա: Նրանք կարծում էին, թե գորտը խելամտորեն կխուսափի հարձակումից և, ընդհակառակը, չարիքից ազատվելու անհրաժեշտություն կզգա: Սակայն, երբ օձին դրեցին վանդակի մեջ, նա ոչ մի ուշադրություն չդարձրեց գորտի վրա, իսկ վերջինս էլ՝ իր հերթին օձի վրա: Հնարավոր էր, որ ամեն ինչ խաղաղ վերջանար, եթե հետևյալ առավոտ օձը վանդակի պատը մագլցելիս չկորցներ հավասարակշռությունը: Գիշատիչը անսպասելիորեն հարձակվեց ընկածի վրա: Ներկաները մինչև ուշքի կգային, օձի մարմնի առաջին քսան սանտիմետրը արդեն գորտի կոկորդումն էր:

Օձը կատաղի կերպով ձգտում էր փաթաթվել թշնամուն ու ազատել իր գլուխը, բայց գորտը կիպ սեղմվում էր վանդակի հատակին, խուսափելով մահացու ճնշումից: Միաժամանակ նա այնպիսի ուժով սեղմեց իր ծընոտները, որ օձի վիզը վերածվեց տափակ, կանաչ ժապավենի: Որպեսզի օձին հնարավորություն չտա երախից հանել գլուխը, գորտը սեղմեց նրա վիզը նաև առջևի թաթերով:

Բայց կանաչ օղակներն ավելի ամուր սեղմեցին գորտին, և նա

սկսեց հանդես բերել անհանգստության նշաններ: Օձին նույնիսկ հաջողվեց ազատել վզի մի մասը, և թվաց, թե գիշատիչը շուտով կդադարեցնի պայքարը: Սակայն, հմտորեն գործելով առջևի թաթերով, նա կարողացավ մի քիչ ձգել իրեն փաթաթված օղակները և հետո իր երախի մեջ քաշել օձի մարմնի մեծ մասը: Ապա գորտը բարձրացրեց և մի կողմ շպրտեց թըշնամու մարմինը, շարունակելով կուլ տալ:

Օձը շարունակում էր գալարվել, բայց արդեն չէր կարողանում անցնել հակահարձակման:

Անցավ երկու ժամ, իսկ հաղթողը չէր էլ պատրաստվում բաժանվել որսից:

Հետո գորտը նորից կատարեց կուլ տալու մի երկու շարժում, և նորից օձի մարմնից երկու մատնաչափ անհետացավ նրա կոկորդում: Գիշատիչը համբերատար կերպով կուլ տվեց որսը, մինչև որ ողջ օձը ներս գնաց: Կուլ տալու ամբողջ «արարողությունը» տևեց քառասուներկու ժամ:

# ՇԱԽՄԱՏԻ ԾԱԳՈՒՄԸ և զարգացումը

Արդյո՞ք շախմատը վաղուց գոյություն ունի:

Հնդկական խաղերի մասին եղած ուսումնասիրությունները ցույց են տվել, որ հնում բազմաթիվ խաղերի հետ միասին տարածված էր նաև չատուպար կամ պաչիզի խաղը, որը խաղում էին չորս հոգով. երկուսը երկուսի դեմ:

Այս խաղը հնդիկները անվանել են չատուրանգ, որը սանսկրիտերեն նշանակում էր զինվորական 4 ջոկատի միացություն: Ֆիգուրների ամեն մի կոմպլեկտ ուներ իր գույնը. դեղիններն ու կարմիրները պայքարում էին սևերի ու կանաչների դեմ:

Առաջին քայլի իրավունք ստանում էր այն զույգը, որը զառի նետումով կարողանում էր բերել 4 թվանշանը: Խաղի ամբողջ նպատակն էր՝ վերցնել հակառակորդի երկու արքաները, իսկ ավելի վաղ ժամանակներում պահանջվում էր վերցնել բոլոր ֆիգուրները:

Շուտով չատուրանգը դարձավ երկու հոգու խաղ: Արքաներից որևէ մեկին «մատ» հայտարարելով խաղն ավարտված էր համարվում: Արքան և ձին կարող էին շրջել բոլոր 64 վանդակների վրայով, բայց դրա հետ մեկտեղ՝ արքան հզոր էր և ուժեղագույնը, ինչպես հարձակման, այնպես էլ պաշտպանության ժամանակ:

Գոյություն են ունեցել նաև այսպես կոչված «Հզոր շախմատներ», որոնց հայրենիքը նույնպես Հնդկաստանն էր: Խաղատախտակը բաղկացած էր 144 վանդակից (12×12): Կային նաև «Աստղաբաշխական շախմատներ», որոնց խաղին մասնակցում էին 7 հոգի

Ծագելով չատուրանգից, շատ ինքնատիպ ձևավորվեց չինական շախմատը՝ սիանցին: Խաղատախտակը մեջտեղից բաժանվում է «գետով»: Ֆիգուրները շարժվում են գծերի վրայով և վերևից տարբեր ձևի նշաններ ունեն: Գլխավորը համարվում է գեներալը: Նրա զինված ուժերը կարող են առաջ շարժվել մինչև գրոհի գիծը՝ «գետը»:

Շախմատի ծագման պատմությունը սովորաբար կապում են մի հետաքրքիր ավանդության հետ:

Հնդկական արքա Սիխրամը չուներ կազմակերպչական տաղանդ և խելք: Կարճ ժամանակամիջոցում նա պետությունը հասցրեց քայքայման: Այն ժամանակ Սեսսա անունով մի գյուղացի նրան մեղմ նկատողություն արեց ոչ ճիշտ վարքի համար և ցուցադրեց մի խաղ, որտեղ արքան ամենակարևոր ֆիգուրն էր, բայց չէր կարող հասնել ոչ մի բանի՝ առանց մյուս ֆիգուրների ու զինվորների օգնության:

Շախմատային այդ դասը արքայի վրա ուժեղ տպավորություն գործեց:

Ցանկանալով փոխհատուցած լինել գյուղացուն, արքան խոստացավ տալ նրան այն ամենը, ինչ նա կցանկանար: Օգտվելով առիթից, Սեսսան ցանկացավ երկրորդ դասը տալ թեթևամիտ արքային: Նա խնդրեց առաջին վանդակի համար տալ 1 հատիկ ցորեն, երկրորդ վանդակի համար՝ 1-ի կրկնապատիկը, երրորդի համար՝ 2-ի կրկնապատիկը և այդպես շարունակ մինչև 64-րդ վանդակը: Արքան շատ ուրախացավ և հրամայեց բերել ցորենը: Բերեցին, բերեցին ամբողջ պահեստի ցորենը, բայց Սեսսան էլի էր պահանջում, որովհետև չէին հասել 64-րդ վանդակին: Եվ հետո, երբ հաշվեցին, պարզվեց, որ հարկավոր է 18 քվինտիլիոն 446 կվադրիլիոն 744 տրիլիոն 73 բիլիոն 709 միլիոն 551 հազար հատիկ, իսկ սա կազմում է 922 337 203 685 խորանարդ մետր հացահատիկ. յուրաքանչյուր խորանարդ մետրի վրա տեղավորվում է 20 միլիոն հատիկ, 1 խորանարդ սանտիմետրի վրա՝ 20 հատիկ:

Այդքան հացահատիկ կարելի էր ստանալ երկրագնդի մակերեսից 8 անգամ ավելի մեծ տարածությունից:

«Շախմատ» անվանումը ծագել է պարսկերեն «շահ» բառից, որ նշանակում է արքա, իսկ «մաթ» արաբերեն նշանակում է մեռավ:

ԱԼ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

4 Soli

tutti

dal segno

dimin.

Կյանքի արևը մեր սրտերումն է,
Նա միշտ շողում է վառ ու անշեջ
Եվ մեր ուղին միշտ լուսավորում է,
Մեզ ուժ տալիս անվերջ:

ԿՐԿՆԵՐԳ.—Պիոնե՛ր,
Ամենուր առաջ դու քայլի՛ր,
Իմ ընկեր,
Փառքը մեր երկրի շեփորիր,
Միշտ առա՛ջ,
Միշտ առա՛ջ
Դու քայլիր աննահանջ:

Ճոխ ու փարթամ ծաղկել է մեր կյանքը.
Երգն ու ծիծաղն են շուրջը թնդում,
Խինդը վարար է, ծով է բերկրանքը
Մեր հայրենի երկրում:

ԿՐԿՆԵՐԳ. Մեր ճանապարհը լայն է ու բաց է,
Մենք ենք երկրի մեր հույս-ապագան.
Մեր հայրերի հետ մենք միշտ կանգնած ենք
Խաղաղ կյանքի պաշտպան:

ԿՐԿՆԵՐԳ.

# ԲԱՑ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

***Վ. Ի. Լենինի անվան պիոներական կազմակերպության 40-ամյակի առթիվ «Պիոներ» ամսագրի խմբագրությունը հայտարարել է պատանիների ստեղծագործությունների՝ պատմվածքների, բանաստեղծությունների և նկարների***

## ԲԱՑ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹՅՈՒՆ

*Մրցանակաբաշխությանը կարող են մասնակցել մինչև 15 տարեկան բոլոր երեխաները։*

*Խմբագրության հավանությանն արժանացած պատմվածքները, բանաստեղծություններն ու նկարները նախ կտպագրվեն ամսագրում, ապա նոր կորոշվի, թե որ գործին տալ այս կամ այն մրցանակը։*

*Մրցանակաբաշխության նյութերը պետք է ուղարկել մինչև 1962 թ. մարտի 1-ը։ Տպագրությունը սկսվել է 1961 թ. սեպտեմբերից և կավարտվի 1962 թ. ապրիլին, իսկ մրցանակաբաշխության արդյունքները կհրապարակվեն մայիսին։*

## ՍԱՀՄԱՆՎԱԾ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ՄՐՑԱՆԱԿՆԵՐԸ.

Երեք առաջին կարգի մրցանակ
Վեց երկրորդ կարգի մրցանակ
Եվ տասը՝ երրորդ (խրախուսական):

*Մրցանակները կլինեն՝*

*Լուսանկարչական ապարատներ, ինքնահոս գրիչներ, նկարչական պիտույքներ, գեղարվեստական գրքեր և այլն։*

*Մեր հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, «Պիոներ» ամսագրի խմբագրություն, մրցանակաբաշխության ժյուրիին։*

*Նյութերն ուղարկելիս՝ չմոռանաք նշել ձեր տարիքը։*

«ՊԻՈՆԵՐ» ԱՄՍԱԳՐԻ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ ԱԼ. (գեղարվեստական խմբագիր), ԵՍԱՅԱՆ Վ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Լ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Թ. (պատասխանատու քարտուղար), ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ Վ., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир Банаки, № 41
Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց, № 41, Հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—06։

*ՎՖ 01918 Պատվեր 1578 Տպաքանակ՝ 10.000։ Տպագրական 5 մամուլ։ Ստորագրված է տպագրության 3/XII 1961 թ.։ ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ Երևան, Տերյան 91։*

Գինը 20 կ.։



## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝ Նկ. ՊԵՏՐՈՍ ՄԱԼԱՅԱՆԻ*

Համարի գեղարվեստական ձևավորումը՝ ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ.

# ՈՎ ՄԵՆԱԿ ՄՆԱ...



Նկ. ՍԵԴԱ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Երեխաները կանգնեցին շրջանաձև, և Կարինեն սկսեց բացատրել խաղի բովանդակությունը:

— Երաժշտության տակ սկսում ենք քայլել: Երբ ես ասեմ, կամ երաժշտությունը դադարի, դուք անմիջապես պիտի զույգեր կազմեք, բռնեք միմյանց ձեռք: Ով մենակ մնա, պարտավոր է մի որևէ բան կատարել. պարել, երգել կամ արտասանել:

Կհաղթի նա, ով ճարպիկ է, ուշադիր: Խաղին կարող են մասնակցել միայն կենտ թվով երեխաներ:

ՎԱՐԴԱՆ ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԾԱՆՈԹ ԴԵՄՔԵՐ

Այստեղ պատկերված է հանրահայտ մի նկարի կոմպոզիցիան: Բայց ովքե՞ր են այս հերոսները:

Ո՞ր նկարի կոմպոզիցիան է, ո՞ր նկարների հերոսներն են և ովքե՞ր են այդ գործերի հեղինակները:

Նկար—առաջարկ՝ ԴԱՆԻԵԼ ՍԱՐԳՍՅԱՆԻ

## ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Այն ի՞նչ հագուստ է, երբ որ կեղտոտում,
Ջրի փոխարեն կրակն ենք նետում,
Կեղտը այրվում է ու անհետանում,
Հագուստն անվնաս ու մաքուր մնում:

(Ասբեստից կարված զգեստ)

Ծառի խեժից գոյացած
Այն ի՞նչ քար է օգտակար,
Թեև մեղր չունի նա,
Բայց կոչվում է մեղրաքար:

(Սաթ)

ՄԿՐՏԻՉ ԿՈՐՅՈՒՆ



I

ՍՊԻՏԱԿ ՔԵՌԻՆ ՈՒ ԳԱՅԼԸ

II

ԱԽ, ԱՆՊԻՏԱՆ ԳԱՅԼ, ԱՅՍ ԻՆ՞Չ ԱՐԻՐ: ՈՉԻՆՉ, ՆՈՐԸ ԿՊԱՏՐԱՍՏԵՄ:

ՆՈՐԻ՞Ց ՆՈՒՅՆԸ

ԲԱՐԻ ԳԱԼՈՒՍՏ ՔԵՌԻ:

ՀՅՈՒՍԻՍԱՅԻՆ

III

Ի–ԻՆ՞Չ, ՆՈՐԻ՞Ց ԵՍ ՊԱՏՐԱՍՏՈՒՄ:

?!

ՉԷԻ ԿԽԱՆԳԱՐԵՄ